Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2
ՓԵՏՐՎԱՐ
1986 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ



Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ

գլխավոր խմբագիր 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ 52—99—06
պատասխանատու քարտուղար 52—99—22

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի 52—05—58
կուսակցական կյանք 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների 52—57—56
գիտության և կուլտուրայի 52—99—34
խմբագրության վարիչ 53—86—11
գրական աշխատողներ 52—66—77



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՄԱՍԻՆ

1986 թվականի հունվարի 24—25-ը Երևանում, մարզահամերգային համալիրի համերգային դահլիճում տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVIII համագումարը:

Պատգամավորների բուռն, երկարատև ծափահարությունների ներքո Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարի պատվավոր նախագահություն է ընտրվում ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովի գլխավորությամբ:

Ընտրվում են համագումարի ղեկավար մարմինները՝ նախագահություն, քարտուղարություն, խմբագրական հանձնաժողով և մանդատային հանձնաժողով:

Հաստատվում են Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարի օրակարգը և աշխատակարգը:

Համագումարի քննարկմանն են դրվում հետևյալ հարցերը.

1. Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը.
2. Հայաստանի կոմունիստական կուսակցության վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը.
3. ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախագծի մասին.
4. ՍՄԿԿ կանոնադրության (առաջարկվող փոփոխություններով) նախագծի մասին.
5. ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագծի մասին.
6. Հայաստանի կոմունիստական կուսակցության ղեկավար մարմինների ընտրություններ.
7. ՍՄԿԿ XXVII համագումարի պատգամավորների ընտրություններ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հաշվետվությամբ հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

ՀԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ հանգամանորեն շարադրվեցին ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության և ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների, ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագծերի բովանդակությունը, նախահամագումարյան այդ կարևորագույն փաստաթղթերի հիմնական դրույթները:

Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի հաշվետու զեկուցումով հանդես եկավ հանձնաժողովի նախագահ ընկ. Զ. Ա. Զանոյանը:

Զեկուցումների շուրջը ծավալվեց մտքերի փոխանակություն:

Համագումարը հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի աշխատանքը գնահատեց բավարար:

Համագումարը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ միաձայն ընդունեց որոշում:

ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախագծի առթիվ համագումարն ընդունեց բանաձև:

ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների նախագծի առթիվ համագումարն ընդունեց բանաձև:

Համագումարը հաստատեց Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը:

Ապա պատգամավորներն անցան օրակարգի հաջորդ՝ ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագծի մասին հարցի քննարկմանը:

Զեկուցումով հանդես եկավ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ֆ. Տ. Սարգսյանը:

Զեկուցման շուրջը ծավալվեց մտքերի փոխանակություն:

ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագծի մասին զեկուցման առթիվ համագումարն ընդունեց որոշում, որով լիովին հավանություն տվեց ՍՄԿԿ XXVII համագումարին ներկայացվող ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների մասին ՍՄԿԿ Կենտկոմի նախագծին:

Ապա համագումարն անցավ Հայաստանի կոմկուսի ղեկավար մարմինների ընտրությանը: Միաձայն ընտրվեցին Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտե, վերստուգիչ հանձնաժողով: Ընտրվեցին ՍՄԿԿ XXVII համագումարի պատգամավորներ:

Եզրափակման խոսքով համագումարում հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Պատգամավորների բուռն ծափահարությունների ներքո ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարը հայտարարում է փակված:

Համագումարի աշխատանքին մասնակցում էին ՍՄԿԿ Կենտկոմի անդամ, ՀԱՄԿԻՄ-ի քարտուղար ընկ. Վ. Ն. Մակեևը, ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի սեկտորի վարիչ ընկ. Վ. Ա. Կոնդրատևը, ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատող ընկ. Վ. Ի. Պոլյակովը, «Նորություններ» մամուլի գործակալության վարչության նախագահ ընկ. Պ. Ա. Նաումովը:

---

# ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ XXVIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ

## Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ զեկուցումը 1986 թվականի հունվարի 24-ին*)

*Ընկերնե՛ր:*

*Մեր համագումարը տեղի է ունենում նշանակալից ժամանակաշրջանում: Կուսակցությունը, ողջ սովետական ժողովուրդը գնում են դեպի ՍՄԿԿ XXVII համագումար, որը շրջափուլային ուղենիշ կլինի երկրի զարգացման ճանապարհին: Դա կապված է թե՛ քննարկման դրվող հարցերի առաջնահերթ կարևորության և թե արդի ժամանակաշրջանի բնույթի, մեր հասարակության առջև ծառացած նոր ու մասշտաբային խնդիրների հետ:*

*Կուսակցության XXVI համագումարից հետո անցած ժամանակաշրջանը հագեցած էր քաղաքական և հասարակական հսկայական կարևորության իրադարձություններով:*

*Մեր երկրի ժողովուրդները հանդիսավորությամբ նշեցին միասնական սովետական ընտանիքի պանծալի հոբելյանը՝ ՍՍՀ Միության կազմավորման 60-ամյակը և Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակը:*

*Կոմունիստների, աշխատավորների, ողջ սովետական ժողովրդի հայրենասիրական համառ աշխատանքով կենսագործվում էին համագումարի որոշումները, իրականացվում տասնմեկերորդ հնգամյակում երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման ծրագիրը: Նոր խոշոր առաջընթաց քայլ կատարվեց տնտեսական ու սոցիալական զարգացման ճանապարհին, բարձրացավ սովետական մարդկանց բարեկեցությունը, զորացավ մեր մեծ հայրենիքի պաշտպանունակությունը:*

*Է՛լ ավելի ամրապնդվեցին կուսակցության ու ժողովրդի միասնությունը, ժողովուրդների անխախտ բարեկամությունն ու եղբայրությունը, մեր սոցիալիստական հասարակության բարոյաքաղաքական համախմբվածությունը:*

*Այս ամենը կուսակցության լենինյան գլխավոր կուրսի անշեղ իրականացման, նրա իմաստուն ղեկավարության, կազմակերպչական, գաղափարախոսական ու քաղաքական հսկայական գործունեության արգասիքն է:*

*Կոմունիստները, բոլոր սովետական մարդիկ հպարտանում են մեր երկրի պատմական նվաճումներով: Եվ հպարտանում են իրավամբ:*

*Սակայն, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումում, կյանքը, նրա դինամիզմը թելադրում են հետագա փոփոխությունների ու փոխակերպումների անհրաժեշտությունը, հասարակության որակապես նոր վիճակի հասնելու անհրաժեշտությունը, ընդ որում՝ բառիս ամենալայն իմաստով:*

*ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի որոշումներում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովի զեկուցումներում և ելույթնե-*

---

*) *Տպագրվում է կրճատումներով:*

րում առաջադրված է երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուռ և ծավալուն կոնցեպցիան:

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի հոկտեմբերին կայացած պլենումը քննարկեց և հավանություն տվեց ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության, ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների, ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների նախագծերին:

Արագացման կոնցեպցիան կուսակցության բոլոր երեք կարևորագույն նախահամագումարյան փաստաթղթերի առանցքն է: Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը կոչված է ապահովելու սովետական հասարակության կյանքի բոլոր կողմերի որակական վերափոխումը, մեր մարդկանց նյութական ու հոգևոր հարուստ, սոցիալապես դինամիկ կյանքը խաղաղության պայմաններում, է՛լ ավելի լրիվին և վառ բացահայտելու սոցիալիստական հասարակարգի հնարավորություններն ու առավելությունները:

Ծրագրի նոր խմբագրությունը կազմված է մեր հասարակության անցած ուղու մարքս-լենինյան վերլուծության, պատմական զարգացման մեջ նրա տեղի հստակ որոշման, մեր տնտեսական, սոցիալական ու քաղաքական պրակտիկայի, հեռանկարի գիտական կանխատեսման, ստրատեգիական ու տակտիկական խնդիրների դիալեկտիկական միասնության հիման վրա:

Կուսակցության երրորդ ծրագիրը՝ նոր խմբագրությամբ, նշվեց Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում, սոցիալիզմի պլանաչափ ու համակողմանի կատարելագործման ծրագիրն է, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու հիման վրա դեպի կոմունիզմ սովետական հասարակության հետագա առաջընթացի ծրագիր: Դա հանուն խաղաղության ու սոցիալական առաջադիմության պայքարի ծրագիր է:

Ծրագրի մեջ կուսակցության տնտեսական ստրատեգիան սահմանված է՝ հաշվի առնելով գիտատեխնիկական հեղափոխության հետագա խորացումը: Ծրագիրը նպատակամղված է իրոք պատմական մասշտաբի վերափոխումների՝ ժողովրդական տնտեսության նոր տեխնիկական վերակառուցման իրագործում, դրա փոխադրում զարգացման ինտենսիվ ուղի, երկրի էկոնոմիկայի դուրսբերում կազմակերպման ու արդյունավետության բարձրագույն մակարդակ:

Նախագծի մեջ հստակորեն սահմանված է կուսակցության դիրքորոշումը սոցիալական ոլորտի նկատմամբ: Սոցիալական քաղաքականությունը նրանում դիտվում է որպես երկրի տնտեսական զարգացումն արագացնելու, մասսաների աշխատանքային ու հասարակական-քաղաքական ակտիվությունը բարձրացնելու հզոր միջոց, որպես հասարակության քաղաքական կայունության, նոր մարդու ձևավորման, սոցիալիստական ապրելակերպի հաստատման կարևորագույն գործոն:

Կարևոր նշանակություն ունեն նաև գաղափարախոսական աշխատանքի բնագավառին վերաբերող հիմնադրույթները: Ծրագիրը խնդիր է դնում դաստիարակել մարդկանց մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով, ճշմարտացի խոսքով և իրական գործով՝ քաղաքական լուսավորությունը, գաղափարական ազդեցությունը միավորելով տնտեսական ու սոցիալական հարցերի լուծմանը, հասարակության գործերի կառավարմանը աշխատավորների ավելի ու ավելի ընդլայնվող մասնակցության հետ:

Ծրագիրը աշխարհում խաղաղության հաստատման, ժողովուրդների սոցիալական առաջընթացի և ազգային ազատագրության կոնցեպցիայի, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման ամրապնդման կոնցեպցիայի ամբողջական արտահայտությունն է: Ծրագիրը ցուցադրում է մեր կուսակցության անփոփոխ համերաշխությունը առաջադեմ ուժերի պայքարի հետ:

Հիմնական ուղղությունների նախագիծը նախատեսում է ինչպես ամբողջ երկրի, այնպես էլ յուրաքանչյուր միութենական հանրապետության հետագա հարաճուն զարգացում: Տնտեսական ստրատեգիայի բարձրագույն նպատակը, ընդգծված է նախագծում, եղել և մնում է ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացումը: Առաջիկա ժամանակաշրջանում այդ



նպատակի իրագործումը պահանջում է սոցիալ-տնտեսական զարգացման արագացում, արտադրության համակողմանի ինտենսիվացում և նրա արդյունավետության բարձրացում՝ գիտատեխնիկական առաջադիմության բազայի վրա:

Նախագիծը կոչված է նյութականացնելու կուսակցության ծրագրի դրույթները և համապատասխանում է նրա պահանջներին՝ արագացնելու մեր հասարակության զարգացումը, միաժամանակ լուծելու այնպիսի ստրատեգիական խնդիրներ, ինչպիսիք են ժողովրդի բարեկեցության բարձրացումը, սովետների երկրի տնտեսական պոտենցիալի ամրապնդումը և նրա պաշտպանունակության պահպանումը պատշաճ մակարդակի վրա:

ՍՄԿԿ կանոնադրության մեջ կատարվելիք փոփոխությունների նախագիծը համապատասխանում է կուսակցության ծրագրային նպատակներին: Նրանում հաշվի են առնված ինչպես կուսակցական պրակտիկ աշխատանքի փորձը, այնպես էլ այն առաջարկությունները, որ վերջին ժամանակներս արել են կոմունիստները, կուսակցական կազմակերպությունները:

Լուծվող խնդիրների մասշտաբայնությունը, խորությունն ու բարդությունը նոր, բարձր պահանջներ են ներկայացնում կուսակցական ղեկավարման մակարդակին, թելադրում են կուսակցական աշխատանքի բոլոր կողմերի նկատմամբ նոր մոտեցումների անհրաժեշտությունը: Այս ամենը արտացոլված է կուսակցության հիմնական օրենքում: Առաջարկվող փոփոխությունները, շեշտվեց Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում, ծառայում են կուսակցության անդամի հեղինակության, կոչման ու նշանակության, նրա՝ որպես քաղաքական մարտիկի ու մասսաների կազմակերպչի դերի, կուսակցության գլխավոր գծի ու դիրեկտիվների իրագործման համար նրա պատասխանատվության բարձրացմանը:

Նախահամագումարյան փաստաթղթերը երկրի կոմունիստներին, բոլոր աշխատավորներին զինում են լենինյան կուսակցության նպատակների հստակ ըմբռնումով, դրանց իրականացման հզոր միջոցներով:

Ահա թե ինչու այդ փաստաթղթերի քննարկումը ակտիվ ու շահագրգիռ կերպով անցավ հանրապետությունում տեղի ունեցած կուսակցական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների ժողովներում, շրջանային և քաղաքային կուսկազմակերպությունների կոնֆերանսներում, և դրանք արժանացան լիակատար ու միահամուռ հավանության: Հայտնվել են շատ ցանկություններ, որոնք վերաբերում են դրանց տարբեր բաժիններին: Արվել են նաև մեր կյանքի բոլոր ոլորտներում գործերի վիճակի բարելավմանն ուղղված ոչ քիչ թվով կոնկրետ առաջարկություններ, որոնք հաշվի են առնված և դրանց կենսագործման նպատակով ձեռնարկվում են համապատասխան միջոցներ:

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումից հետո երկրի էկոնոմիկան վերակառուցվում է նոր հիմունքներով, վերափոխվում են տնտեսավարման ձևերն ու մեթոդները, հասարակական կյանքի շատ կողմեր, արմատախիլ է արվում ամեն բացասականը, իր դարն ապրածը, ինչը թուլացնում է հասարակության բարոյական հիմքերը, կաշկանդում մեր առաջընթացը:

ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունը հաստատակամորեն և հետևողականորեն վարում են լենինյան խաղաղասիրական քաղաքականություն, ակտիվ քայլեր ձեռնարկում միջուկային սպառնալիքի վերացման, ամբողջ միջազգային իրադրության առողջացման համար: Այդ տեսակետից բացառիկ կարևոր նշանակություն ունեն այն նախաձեռնությունները ու առաջարկությունները, որ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովն առաջ քաշեց օրերս արված հայտարարության մեջ, ինչպես նաև Փարիզում ու Ժնևում կայացած բարձր մակարդակի հանդիպումների ժամանակ:

Այս ամենն արժանանում է կոմունիստների, բոլոր սովետական մարդկանց լիակատար հավանությանն ու ջերմ պաշտպանությանը, բարձրացնում նրանց քաղաքական և աշխատանքային ակտիվությունը լենինյան կուսակցության նոր հոյակապ կանխագծումների իրականացման գործում:

*Ընկերնե՛ր։*

*Ակտիվ ու լիարյուն է եղել հանրապետության հասարակական-քաղաքական կյանքը հաշվետու ժամանակաշրջանում։ Հայաստանի կոմկուսը, նրա Կենտրոնական կոմիտեն հետևողականորեն իրականացրել են կուսակցության XXVI համագումարի որոշումները, կոմունիստների, բոլոր աշխատավորների ջանքերը մոբիլիզացրել կատարելու տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները։*

*Այսօր մենք գոհունակությամբ ենք նշում, որ տնտեսական ու սոցիալական զարգացման հնգամյա ծրագիրը ամբողջությամբ վերցված հաջող է իրականացվել։ Նվաճվել են նախատեսված բնագծերը։ Մեր հանրապետությունը նոր հաջողությունների է հասել տնտեսական և կուլտուրական շինարարության մեջ։ Մեծացել է նրա ավանդը ընդհանուր միութենական խնդիրների լուծման գործում։ Սա է հանրապետության կուսակցական կազմակերպության, մեր կոմունիստների, բոլոր աշխատավորների աշխատանքի գլխավոր արդյունքը։*

*Հաշվետու ժամանակաշրջանում մեր մայրաքաղաք Երևանը պարգևատրվեց Լենինի շքանշանով, Լենինականը՝ Ժողովուրդների բարեկամության շքանշանով։ Տնտեսական և սոցիալական զարգացման պլանների հաջող կատարման համար Հայկական ՍՍՀ-ն չորս տարի անընդմեջ պարգևատրվել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով։*

## I. ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՀԻՄԱՆ ՎՐԱ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՐԱԳԱՑՈՒՄԸ՝ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԽՆԴԻՐ

*Ընկերնե՛ր։*

*Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն հետևողականորեն կենսագործել է կուսակցության տնտեսական քաղաքականությունը։ Կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների ջանքերը մոբիլիզացվել են էկոնոմիկայի դինամիկ զարգացումն ապահովելուն։ Կենտկոմը հատուկ ուշադրություն է նվիրել հանրապետության ժողովրդական տնտեսության գիտատեխնիկական և կազմակերպական-տնտեսագիտական մակարդակի բարձրացմանը։*

*Հաշվետու ժամանակաշրջանում զգալիորեն մեծացել է հանրապետության տնտեսական պոտենցիալը։ Նոր խոշոր առաջընթաց քայլ է կատարվել հանրապետության արտադրողական ուժերի զարգացման գործում։ Բարձրացել է հետևողականորեն զարգացման ինտենսիվ ուղի փոխադրվող հանրային արտադրության արդյունավետությունը։ Կատարելագործվել է ժողովրդական տնտեսության ճյուղերի կառուցվածքը։*

*Ազգային եկամուտը 1980 թվականի համեմատությամբ ավելացել է 31,3 տոկոսով, հանրային աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 19 տոկոսով։ Ժողովրդական տնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը 25 տոկոսով ավելի կապիտալ ներդրումներ են հատկացվել, քան նախորդ հնգամյակում։ Հիմնական արտադրական ֆոնդերը մեծացել են 39,7 տոկոսով։ Էկոնոմիկայի նյութական ոլորտի մեջ լրացուցիչ ներգրավվել է ավելի քան 100 հազար մարդ, իսկ ամբողջությամբ վերցված ժողովրդական տնտեսության հանրային սեկտորի մեջ՝ մոտ 150 հազար մարդ։*

*Իջել են հանրային արտադրության և ազգային եկամտի նյութատարությունը, էլեկտրատարությունը, կապիտալատարությունը։*

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, ինչպես միշտ, հատուկ ուշադրություն է նվիրել արդյունաբերության զարգացմանը։*

*Հանրապետության արդյունաբերությունը տասնմեկերորդ հնգամյակի պլանները հիմնական ցուցանիշներով կատարել է ժամկետից շուտ։ Արտադրության ծավալի աճը կազմել է 33,2 տոկոս՝ հնգամյա պլանով նախատեսված 30 տոկոսի դիմաց, աշխատանքի արտադրողականության աճը՝ 16,4 տոկոս՝ 16,1 տոկոսի դիմաց։ Տարեկան պլաններից դուրս թողարկվել է ավելի քան 670 միլիոն ռուբլու արտադրանք։ Մեծացել է արդյունաբերության տեսակարար կշիռը ազգային եկամտի մեջ։ Արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերն աճել են ավելի քան 35 տոկոսով։*

*Շատ ձեռնարկություններում գործարկվել են նոր կարողություններ, իրականացվել են արտադրության վերակառուցման ու տեխնիկական վերազինման աշխատանքներ։*

*Արագացված տեմպերով են զարգացել գիտատեխնիկական առաջընթացն ապահովող ճյուղերը։ Ավելի քան 1,6 անգամ մեծացել են մեքենաշինական արտադրանքի արտադրության ծավալները։ Ընդ որում՝ արտադրանքի թողարկումը ռադիոէլեկտրոնիկայի, սարքաշինության ձեռնարկություններում ավելացել է 2,5 անգամ։*

*Խոշոր միավորումների և ձեռնարկությունների մասնաճյուղերի, արտադրամասերի և տեղամասերի թիվը ավելացել է 1,6 անգամ։ Դրանց արտադրանքի ծավալների աճի տեմպերը կազմել են 43,9 տոկոս։*

*Առաջանցիկ տեմպերով է զարգացել «Բ» խմբի արդյունաբերությունը, որի արտադրանքի ծավալներն աճել են 39,9 տոկոսով։*

*Հաշվետու ժամանակաշրջանում իրականացվել է նոր տեխնիկայի և առաջադիմական տեխնոլոգիայի ներդրման մոտ 37 հազար միջոցառում, որոնց տնտեսական արդյունավետությունը կազմել է ավելի քան 270 միլիոն ռուբլի։ Գործի են դրվել 600-ից ավելի մեքենայացված և հոսքային գծեր, 300 կոմպլեքսայնորեն ավտոմատացված ու մեքենայացված տեղամասեր, արտադրամասեր, արտադրություններ։*

*Բարելավվել են թողարկվող արտադրանքի որակը և տեխնիկատնտեսական բնութագրերը։ Ընթացիկ հնգամյակում 23,6 տոկոսով ավելի շատ նոր արտադրատեսակներ են յուրացվել, քան նախորդ հնգամյակում։ Ատեստավորման ենթակա արտադրանքի մեջ աճել է պետական որականիշով արտադրատեսակների ծավալը։ Այս գործում շատ ձեռնարկություններ բարձր արդյունքների են հասել։*

*Այսպես, «Հայէլեկտրապարատ» արտադրական միավորման Երևանի էլեկտրապարատների գործարանում (գլխավոր դիրեկտոր՝ ընկ. Է. Մարկոսյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Ա. Ղազարյան) տարեկան նորացվում է արտադրանքի շուրջ 35 տոկոսը, կրկնակի կրճատվել են խոտանից առաջացող կորուստները։ Որակի բարձրագույն կատեգորիայի արտադրատեսակների տեսակարար կշիռը թողարկվող արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ հասցվել է 87 տոկոսի։*

*Հանրապետության արդյունաբերության զարգացման գործում արժանի ավանդ են ներդրել Երևան, Լենինական, Կիրովական քաղաքների, Հրազդանի, Աբովյանի, Ղափանի, Կամոյի, Էջմիածնի և այլ շրջանների աշխատավորական կոլեկտիվները։*

*Համամիութենական և հանրապետական սոցիալիստական մրցության մեջ բարձր արդյունքների ձեռքբերման և պլանային առաջադրանքների հաջող կատարման համար հաղթողներ են ճանաչվել ու փոխանցիկ կարմիր դրոշներով պարգևատրվել մեր շատ միավորումների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների պանծալի կոլեկտիվներ, որոնք լայնորեն հայտնի են ինչպես հանրապետությունում, այնպես էլ երկրում։*

*Սակայն Կենտկոմը քննադատաբար է գնահատում ձեռք բերված արդյունքները, տեսնում է նաև արդյունաբերության աշխատանքում դեռևս առկա լուրջ թերությունները, բացթողումները։*

*Մեզ չեն կարող գոհացնել գիտատեխնիկական առաջընթացի արագացման, արտադրության ինտենսիվացման և նրա արդյունավետության բարձրացման տեմպերը։ Դեռևս ակտիվ ու հաստատակամ աշխատանք չի տարվում արտադրության կառավարման ու կազմակերպման կատարելագործման, ձեռնարկությունների վերակառուցման ու տեխնիկական վերազինման, նրանց*

արտադրական ապարատի նորացման, դրա ռացիոնալ օգտագործման, տրնտեսման ու ռեսուրսախնայողության ասպարեզում։ Հետագա ամրապնդման կարիք ունի պետական, արտադրական և աշխատանքային կարգապահությունը։

Արտադրության պլանների մշտական կատարումը դեռևս գործելակերպի նորմ չի դարձել բոլոր աշխատավորական կոլեկտիվների համար։ Հնգամյակի ընթացքում միջին հաշվով ձեռնարկությունների 7—8 տոկոսը չի ապահովել ապրանքային արտադրանքի թողարկման և իրացման տարեկան պլանների կատարումը։

ՍՍՀՄ նավթավերամշակման ու նավթաքիմիական արդյունաբերության, հանքային պարարտանյութերի արտադրության, քիմիական արդյունաբերության, սարքաշինության, ավտոմատացման միջոցների ու կառավարման համակարգերի, թեթև ու սննդի արդյունաբերության մեքենաշինության ու կենցաղային սարքերի, հանրապետության շինանյութերի արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները ամբողջությամբ վերցված դուրս չեն եկել հնգամյա պլանով նախատեսված բնագծերը։

Անբավարար են աշխատել «Նաիրիտ» գիտաարտադրամիավորումը, «Պոլիվինիլացետատ» արտադրամիավորումը, Երևանի ավտոդողերի ու ռետինատեխնիկական իրերի, Կիրովականի քիմիական մանրաթելի, Հրազդանի ցեմենտի գործարանները և մի շարք այլ ձեռնարկություններ, որոնք պակաս են տվել մի քանի տասնյակ միլիոն ռուբլու արտադրանք։

Միջին հաշվով յուրաքանչյուր չորրորդ ձեռնարկություն չի ապահովել պայմանագրային մատակարարումների տարեկան պլանների լրիվ կատարումը։

Շատ տեղերում գիտատեխնիկական առաջադիմությունը առաջվա պես դանդաղ է ընթանում։ Ձեռնարկությունների և կազմակերպությունների, մինիստրությունների և գերատեսչությունների մեծ մասը չի ապահովել նոր տեխնիկայի ներդրման պլանների կատարումը։ Աշխատանքի արտադրողականության հավելաճի միայն 36 տոկոսն է ապահովվում նոր տեխնիկայի ներդրման հաշվին։

Դեռևս դանդաղ է վերակառուցվում կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների, տնտեսական մարմինների աշխատանքը ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի պահանջների, գիտատեխնիկական առաջընթացի արագացման հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմում տեղի ունեցած խորհրդակցության հիմնադրույթների լույսի ներքո։ Հարցի քննարկումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումում ցույց տվեց, որ մի շարք ձեռնարկություններում նոր տեխնիկայի ներդրման ծրագրերն ու պլանները առաջվա պես անսիստեմ բնույթ են կրում, թույլ են շաղկապվում արտադրության զարգացման, կապիտալ շինարարության, նյութատեխնիկական մատակարարման պլանների հետ։ Մի շարք տեղերում աչքի են զարնում արտադրության անպատրաստությունը, կադրերի որակավորման ոչ բավարար մակարդակը, իսկ երբեմն՝ պարզապես անիրազեկությունը առաջավոր գիտատեխնիկական նվաճումների գործնական իրականացման հարցերում։

Հարկավոր է, ընկերներ, հաստատապես ըմբռնել, որ գիտատեխնիկական առաջընթացի արագացումը կուսակցության տնտեսական ստրատեգիայի գլխավոր ուղղությունն է, ժողովրդական տնտեսության ինտենսիվացման և դրա արդյունավետության բարձրացման հիմնական լծակը, և համապատասխանաբար վերակառուցվել։ Անհրաժեշտ է ավելի ակտիվորեն վերացնել թերությունները, առանց ժամանակ կորցնելու, առավել եռանդագին ծավալել գիտատեխնիկական առաջընթացը։ Յուրաքանչյուր կուսակցական կոմիտե և կազմակերպություն, յուրաքանչյուր սովետական, տնտեսական մարմին ու կազմակերպություն պետք է ուշադրության կենտրոնում պահի գիտատեխնիկական առաջընթացի հարցերը, մեծագույն պատասխանատվություն զգա գիտատեխնիկական առաջընթացի արագացման վերաբերյալ կուսակցության հիմնադրույթների անշեղ կենսագործման համար։

Կենտկոմի բաժինների, կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների լուրջ թերացում, մինիստրությունների ու գերատեսչությունների,



ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարների նկատմամբ ցածր պահանջկոտության հետևանք պետք է համարել նաև այն, որ հնգամյակի ընթացքում աշխատանքի արտադրողականության բարձրացման տարեկան առաջադրանքները չի կատարել հանրապետության ձեռնարկությունների միջին հաշվով 13—16 տոկոսը։ Արտադրության արդյունավետության այդ կարևորագույն ցուցանիշի կատարումը ամբողջությամբ վերցված չեն ապահովել ՍՍՀՄ ավտոմոբիլային, քիմիական արդյունաբերության մինիստրությունների, հանրապետության թեթև, շինանյութերի արդյունաբերության մինիստրությունների, ագրոարդյունաբերության մսեղենի-կաթնեղենի ու պահածոյի ճյուղերի ձեռնարկությունները։

Աշխատանքի արտադրողականության աճի, արտադրական կարգապահության ամրապնդման, կադրերի որակավորման բարձրացման և աշխատանքի վերջնական արդյունքների համար նրանց պատասխանատվության ուժեղացման նպատակով լրիվ չեն օգտագործվում սոցիալիստական մրցության, աշխատատեղերի ատեստավորման մեծ հնարավորությունները։ Դանդաղ են ներդրվում տնտեսական հաշվարկը, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության առաջադիմական ձևերը, այդ թվում՝ բրիգադային կապալը։

Աշխատանքի ցածր արտադրողականության հիմնական պատճառներից մեկը արտադրության կազմակերպման և տեխնոլոգիայի անբավարար մակարդակն է։ Արդյունաբերական շատ ձեռնարկություններում հարկ եղածի պես չեն զբաղվում աշխատանքային պրոցեսների մեքենայացման աստիճանի բարձրացմամբ։ Ներկայումս հանրապետությունում յուրաքանչյուր երրորդ բանվոր ձեռքի աշխատանք է կատարում։

Բավարար չեն աշխատանքները ճկուն ավտոմատացված արտադրությունների ներդրման, հիմնական արտադրական ֆոնդերի նորացման և արդիականացման գործում։ Դրանց զգալի մասը բարոյապես ու ֆիզիկապես վաղուց հնացել է։ Սարքավորումների ընդհանուր քանակի մեջ ցածր է ավտոմատացված գծերի, մասնագիտացված, թվածրագրային կառավարմամբ հաստոցների, ռոբոտացված համալիրների բաժինը։ Միաժամանակ հանրապետության ձեռնարկություններում կան մեծ քանակությամբ չտեղակայված սարքավորումներ։

Ոչ բոլոր միավորումներն ու ձեռնարկություններն են անհրաժեշտ միջոցներ ձեռնարկում առկա արտադրատեխնիկական պոտենցիալն առավել արդյունավետ օգտագործելու համար։ Մեքենաների ու սարքավորումների, այդ թվում՝ ծրագրային կառավարմամբ հաստոցների համակազմը ծանրաբեռնված է ոչ լրիվ։ Դանդաղ է աճում հերթափոխայնության գործակիցը հատկապես մեքենաշինության մեջ, որտեղ այն կազմում է ընդամենը 1,35։ Այդ ցուցանիշը անթույլատրելիորեն ցածր է թեթև ու սննդի արդյունաբերության և կենցաղային սարքերի մեքենաշինության մինիստրության ձեռնարկություններում՝ 0,96, ավտոմոբիլային արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում՝ 1,11, «Տեխսարքավորում» արտադրամիավորումում՝ 1,21, Արթիկի էլեկտրավակուումային վառարանների գործարանում՝ 1,13։ Դանդաղկոտություն է դրսևորվում նոր գործարկվող արտադրությունների նախագծային կարողությունների յուրացման գործում։

Կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների խնդիրն է աշխատավորական կոլեկտիվների ջանքերը նպատակամղել յուրաքանչյուր քառակուսի մետրից, սարքավորումների յուրաքանչյուր միավորից արտադրանքի թողարկման շեշտակի ավելացմանը, բարձրացնել հերթափոխայնության գործակիցը, կրճատել պարապուրդները, գործարկվող կարողությունների յուրացման ժամկետները։

Այս կապակցությամբ հարկ է կուսակցության շրջկոմների, մինիստրությունների ու գերատեսչությունների, միավորումների և ձեռնարկությունների ղեկավարների ուշադրությունը բևեռել հետևյալի վրա։ Մեր ձեռնարկությունների շատ մասնաճյուղեր, որոնք ստեղծված են հանրապետության տարբեր ռեգիոններում, գործում են արդեն բավականին երկար տարիներ և նրանց ձևավորման շրջանն անցել է։ Եվ ժամանակն է նրանց շատ ավելի մեծ պա-

խնդիր առաջադրելու՝ հանրապետությունում թողարկվող ցանկացած արտադրատեսակ պետք է լինի ամենաբարձր որակի, հուսալիության և տեխնիկական մակարդակի, բարձրացնի սովետական մակնիշի պատիվը։

Այսօր կարևորագույն խնդիր է ռեսուրսների տնտեսումը, դրանց խնայողական ծախսումը։ Տնտեսման ու խնայողության պայքարը կուսակցության կուրսն է՝ նախատեսված տևական հեռանկարի համար։ Տասներկուերորդ հնգամյակում վառելիքի, էներգիայի, հումքի և նյութերի պահանջարկի հավելաճը 75—80 տոկոսով պետք է ապահովվի դրանց տնտեսման հաշվին։

Սակայն մեզ մոտ ռեսուրսների տնտեսումը դեռևս չի դարձել արտադրության ինտենսիվացման կարևորագույն գործոններից մեկը։ Մեքենաշինության մեջ անթափոն տեխնոլոգիաների, պատրաստուքների ստացման առաջավոր մեթոդների դանդաղ ներդրման հետևանքով մշակվող մետաղի մոտ 40 տոկոսը վերածվում է տաշեղի։

Մեզ մոտ դանդաղ են ներդրվում էներգախնայիչ տեխնոլոգիաները։ Տասնմեկերորդ հնգամյակի տարիներին շատ ձեռնարկություններ ու կազմակերպություններ թույլ են տվել էլեկտրասպառման լիմիտի գերազանցում և ջերմաէներգիայի գերածախս։ Հենց Հայգլխէներգոյի համակարգում (պետ՝ ընկ. Ֆ. Հակոբջանյան), որը պատասխանատու է ժողովրդական տնտեսության ճյուղերի էներգասպառումը վերահսկելու համար, էլեկտրացանցերի մեջ կորուստները զգալիորեն գերազանցում են սահմանված նորմատիվները։

Վառելիքաքսանյութերը ոչ խնայողաբար են ծախսվում հանրապետության ավտոտրանսպորտի մինիստրության, ագրոարդի համակարգում, շինարարության մեջ։

Իսկ որքան կորուստներ ենք կրում նյութական արժեքների վատ պահպանման, անտնտեսվարության և թափթփվածության, սոցիալիստական սեփականության հափշտակումների հետևանքով։ Այս տեսակետից պետք է լուրջ պահանջներ ներկայացնել նավթամթերքների պետական կոմիտեին (նախագահ՝ ընկ. Կ. Վարդանյան), որոշ արդյունաբերական մինիստրությունների ու գերատեսչությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների։ Թեթև արդյունաբերության մինիստրության (մինիստր՝ ընկ. Ա. Գևորգյան) առանձին ձեռնարկություններում սոցիալիստական սեփականության հափշտակումները փաստորեն ի չիք են դարձնում հումքի և նյութերի տնտեսման համար աշխատավորական կոլեկտիվների գործադրած ջանքերը։

Խնայողության հարցերը ներկայումս ավելի լայնորեն են դրվում. ոչ միայն տնտեսավարել փութաջանորեն, բարելավել ռեսուրսների պահպանումը, այլև գործի դնել տեխնիկատեխնոլոգիական գործոնը, բարձրացնել արտադրանքի վերամշակման աստիճանը, արտադրանք թողարկել նվազագույն նյութական ծախսումներով, հաստատակամորեն ներդնել ռեսուրսախնայիչ, սակավաթափոն, անթափոն տեխնոլոգիաներ։

Մենք չենք կարողանա հաջողությամբ լուծել աշխատանքի արտադրողականության, արտադրանքի որակի բարձրացման, արտադրատեխնիկական պոտենցիալի, ռեսուրսների բոլոր տեսակների արդյունավետ օգտագործման խնդիրները, եթե արտադրության տեխնիկական մակարդակը որակապես նոր աստիճանի բարձրացնելու աշխատանքի հետ մեկտեղ չկատարելագործենք պլանավորումն ու կառավարումը, ըստ ամենայնի չբարելավենք արտադրության և աշխատանքի կազմակերպումը, եթե չամրապնդենք արտադրական, տեխնոլոգիական և աշխատանքային կարգապահությունը, կարգուկանոնը յուրաքանչյուր ձեռնարկությունում, չկատարելագործենք և չռացիոնալացնենք աշխատատեղերը, շեշտակիորեն չկրճատենք աշխատաժամանակի կորուստները։ Չի կարելի հաջողություն ակնկալել առանց բոլոր մասնագետների ու բանվորների որակավորման, նրանց սոցիալական ակտիվության հետևողական բարձրացման, առանց նրանց ստեղծագործական ու բարեխիղճ աշխատանքի։

Այս ամենն իրականացնելու համար պետք է անդուլ աշխատանք կատարեն մեր սկզբնական կուսակցական կազմակերպությունները, կուսակցության շրջկոմները, քաղկոմները, մինիստրություններն ու գերատեսչությունները, կառավարությունը և Հայաստանի կոմկուսի Կենտկոմը։



Մեր առջև խնդիր է դրված տասներկուերորդ հնգամյակը դարձնել բեկումնային՝ արդյունաբերության ինտենսիվացման, նրա աշխատանքի արդյունավետության բարձրացման գործում։

Թույլ տվեք վստահություն հայտնել, որ հանրապետության արդյունաբերության աշխատողները, ինչպես միշտ, կլինեն կուսակցության առաջադրած խնդիրների կատարման համար պայքարի առաջին շարքերում։

Ընկերնե՛ր։

Կենտրոնական կոմիտեն մշտապես իր ուշադրության կենտրոնում է պահել տրանսպորտի և կապի աշխատանքի բարելավման հարցերը։

Երկաթուղային և ընդհանուր օգտագործման ավտոմոբիլային տրանսպորտով պլանից դուրս փոխադրվել են ավելի քան 24 միլիոն տոննա ժողովրդատնտեսական բեռներ, մարդատար ավիափոխադրումները ավելացել են մոտ 22, իսկ կապի արտադրանքը՝ 27 տոկոսով։ ՍՄԿԿ XXVI համագումարի դիրեկտիվներին համապատասխան ավարտվել է հանրապետության համար կենսականորեն կարևոր օբյեկտի՝ Իջևան—Հրազդան երկաթուղու շինարարությունը, բաց է թողնվել առաջին բանվորական գնացքը։

Տրանսպորտի և կապի բնագավառներում քիչ գործ չի արվել արտադրության մեջ նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության նոր ձևերի ներդրման առումով։

Դրա հետ մեկտեղ այդ ճյուղերի աշխատանքը դեռևս լիովին չի վերակառուցվել ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի որոշումների ոգով։ Միշտ չէ, որ ապահովվում է տրանսպորտի ու կապի աշխատանքի հստակ և կայուն ռիթմը, ցածր է սպասարկման կուլտուրան։

Երկաթուղում (բաժանմունքի պետ՝ ընկ. Հ. Ղանդիլյան) քիչ չեն վագոնների գերնորմատիվային պարապուրդները, չի կազմակերպված բեռներ ստացողների հստակ տեղեկացումը, դեռևս խափանումներ կան վագոնների և կոնտեյներների մատուցման գործում, լիովին չի ապահովվում փոխադրվող բեռների պահպանությունը։ Ինչպես ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության համակարգում (մինիստր՝ ընկ. Խ. Դրամփյան), այնպես էլ մյուս գերատեսչություններում դեռևս ռացիոնալ չեն օգտագործվում փոխադրամիջոցները, ցածր է շարժակազմի նորոգման որակը, մեծ են պարապ վազքերը, թույլ են տրվում հավելագրումներ։ Մի շարք հավաքակայաններում բեռնատար շարժակազմի կառուցվածքը չի համապատասխանում փոխադրումների պահանջմունքներին, անբավարար է նյութատեխնիկական բազան։ Հանրապետության ավիատորների (քաղաքացիական ավիացիայի վարչության պետ՝ ընկ. Դ. Աթբաշյան) աշխատանքային, տեխնոլոգիական և արտադրական կարգապահությունը առայժմ չի համապատասխանում արդի պահանջներին, այստեղ դեռևս տեղ են գտնում ուղերթների ուշացումներ անձնակազմի մեղքով, թռիչքների կանոնավորության խախտումներ։ Հանրապետության կապի մինիստրության աշխատանքում (մինիստր՝ ընկ. Հ. Միրզոյան) առավել նեղ տեղը մնում է կապի տեխնիկական վիճակն ու որակը։ Դեռևս շահագործվում են բարոյապես հնացած և ֆիզիկապես մաշված սարքավորումներ։

Խոսելով տրանսպորտի մասին՝ պետք է նկատի ունենալ, որ անհրաժեշտ ժողովրդատնտեսական արդյունք կարող է ձեռք բերվել միայն տրանսպորտի ամբողջ կոնվեյերի անխափան գործունեության միջոցով։ Այս կապակցությամբ հետագա բարելավման կարիք ունի կլիենտուրայի աշխատանքը։ Անհրաժեշտ է բարձրացնել նրա պատասխանատվությունը փոխադրամիջոցները ժամանակին բեռնելու և բեռնաթափելու համար։ Անթույլատրելի է, որ բեռներ ստացողների մոտ վագոնների միջին պարապուրդը 26 տոկոսով գերազանցում է նորմատիվը։

Տրանսպորտի և կապի կուսակցական կազմակերպությունները, ձեռնարկությունների ղեկավարները պետք է ամենուրեք ամրապնդեն կարգապահությունը, կազմակերպվածությունը և կարգուկանոնը, ապահովեն փոխադրումների գործում ժողովրդական տնտեսության և բնակչության պահանջմունքների ժամանակին, որակյալ ու լիակատար բավարարումը, կապի ցանցի աշխատանքի հուսալիության բարձրացումը։ Անհրաժեշտ է հասնել ժողովրդա-

կան տնտեսության մյուս ճյուղերի հետ հստակ փոխգործողության, տրանսպորտի բոլոր տեսակների աշխատանքի կոորդինացման, աշխատանքի արտադրողականության, շարժակազմի օգտագործման արդյունավետության բարձրացման, երթևեկության անվտանգության: Հարկավոր է էլ ավելի վճռականորեն պայքարել հավելագրումների դեմ, սահմանել խնայողության խիստ ռեժիմ:

Հարկավոր է ծավալել Վարդենիս—Ջերմուկ երկաթուղու շինարարությունը, մեծացնել դիզելային շարժիչներ ունեցող ու գազով աշխատող ավտոմոբիլների տեսակարար կշիռը, սկսել մարդատար բարձրարդյունավետ մագիստրալային ինքնաթիռների շահագործումը, ընդլայնել ավիացիայի կիրառությունը ժողովրդական տնտեսության մեջ: Հանրապետության կապի աշխատողները պետք է հասնեն տեխնիկական վերազինման տեմպերի արագացման, հեռախոսացանցի աշխատանքի որակի բարելավման, հեռուստատեսային և ռադիոհաղորդումների հուսալիության բարձրացման, կապի սպասարկումների ընդլայնման:

Ընկերնե՛ր:

Հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի գործունեությունը նպատակամղված է եղել կուսակցության ագրարային քաղաքականության անշեղ կենսագործմանը, պարենային ծրագրի իրականացմանը:

Տասնմեկերորդ հնգամյակի տարիներին ագրոարդյունաբերական համալիրի հիմնական ֆոնդերը մեծացել են 28 տոկոսով: Գյուղատնտեսական արտադրության զարգացմանը հատկացվել են 29,8 տոկոսով ավելի կապիտալ ներդրումներ, քան տասներորդ հնգամյակում: Մեծ ծավալի աշխատանքներ են կատարվել ջրատնտեսական շինարարության և հողերի մելիորացման բնագավառում: Ոռոգելի հողատարածությունները ավելացել են 19,9 հազար հեկտարով, ջրարբիացված արոտավայրերը՝ 40 հազար հեկտարով: Ախուրյանի, Հալավարի, Կեչուտի, Սևաբերդի, Ծիլքարի և Քարագլխի ջրամբարները շահագործման հանձնելու շնորհիվ հանրապետությունում ջրամբարների ընդհանուր տարողությունը անցել է 942 միլիոն խորանարդ մետրից, որը մոտավորապես 3 անգամ ավելի է, քան 1975 թվականին: 82,8 հազար հեկտար տարածքի վրա վերակառուցվել են ոռոգման ցանցերը, բարելավվել է 5,5 հազար հեկտար հողերի մելիորատիվ վիճակը: Աշխատանք է տարվել կերի բազայի ամրապնդման ուղղությամբ, սեփական արտադրության կերերի միջին տարեկան ծավալը մեծացել է 20 տոկոսով: Զգալիորեն լրացվել է մեքենատրակտորային համակազմը, բարձրացել է ճյուղի էներգազինվածությունը, մեծացել են գյուղին հանքային պարարտանյութերի և մյուս նյութատեխնիկական միջոցների մատակարարումների ծավալները:

Գործարկվել են մեծ թվով անասնապահական շենքեր ու համալիրներ, թռչնաֆաբրիկաներ, համակցված կերերի ու ալրաղաց ձեռնարկությունների կարողություններ, կաթի ու պահածոյի գործարաններ, պահեստներ ու սառնարաններ, ջերմոցային կոմբինատներ և արտադրական նշանակության այլ օբյեկտներ: Ընդարձակվել են անտառտնկարկները:

Մեծ ուշադրություն է նվիրվել գյուղի սոցիալական զարգացմանը, առանձնապես լեռնային ու նախալեռնային շրջաններում: Պետական կապիտալ ներդրումների հաշվին կառուցվել և շահագործման են հանձնվել 417 հազար քառակուսի մետր մակերեսով բնակելի տներ, 10,9 հազար տեղով ակումբներ ու մշակույթի պալատներ, 36,6 հազար տեղով դպրոցներ և 5,5 հազար տեղով մանկական նախադպրոցական հիմնարկներ, կառուցվել են 480 կիլոմետր ջրատարներ, 538 կիլոմետր գազամուղներ: Գյուղական բնակչությանը մեծ օգնություն է ցույց տրվում անհատական բնակարանային շինարարության գործում: Այս ամենի շնորհիվ բարենպաստ պայմաններ են ստեղծվել գյուղի բնակչության թվի ավելացման, նրա արտահոսքի պակասեցման, գյուղում կադրերի ամրացման համար:

Միջոցներ են ձեռնարկվել կոլտնտեսությունների և սովխոզների տնտեսական վիճակի բարելավման համար:



Գյուղատնտեսության համախառն արտադրանքի միջին տարեկան ծավալի աճը կազմել է 13,8 տոկոս՝ հնգամյա պլանով նախատեսված 10,9 տոկոսի փոխարեն: Հանրապետության ագրոարդյունաբերական համալիրի սննդի ճյուղերը կատարել են հնգամյակի առաջադրանքը: Արտադրության ծավալների աճը կազմել է 17,1 տոկոս:

Ամբողջությամբ վերցված հանրապետությունում կատարվել և գերակատարվել են հիմնական գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների հնգամյա պլանները: Հնգամյա պլանով սահմանված առաջադրանքներից դուրս պետությանը վաճառվել են 58,7 հազար տոննա հացահատիկ, 151,4 հազար տոննա բանջարեղեն, 103,6 հազար տոննա շաքարի ճակնդեղ, 97,3 հազար տոննա կարտոֆիլ, 25,6 հազար տոննա խաղող, 6,1 հազար տոննա միս, 82,1 հազար տոննա կաթ, 120 միլիոն հատ ձու և 533 տոննա բուրդ:

Բարձրացել են հիմնական գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնապահության մթերատվությունը: Հանրային հոտում մեկ կովի կաթնատվությունը ավելացել է 159 կիլոգրամով և հասել 2.130 կիլոգրամի: Պետությանը վաճառված խոշոր եղջերավոր անասունների միջին քաշը հասել է 325 կիլոգրամի:

Զգալիորեն մեծացել է գյուղատնտեսական մթերքների արտադրության ծավալը բնակչության անձնական օժանդակ տնտեսություններում: Մեծացել են ձկան արտադրության ծավալները:

Արտադրության շատ առաջավորներ զգալի հաջողությունների են հասել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնապահության մթերատվության բարձրացման գործում:

Նաիրիի շրջանի կթվորուհիներ Ռիտա Խաչատրյանը և Թոռուն Ստեփանյանը անցյալ տարի մեկ կովից ստացել են համապատասխանաբար 5.840 և 5.770 կիլոգրամ կաթ, Գորիսի շրջանի Խնձորեսկ գյուղից՝ սոցիալիստական աշխատանքի հերոս, կթվոր Արամայիս Հայրյանը՝ 5.200 կիլոգրամ կաթ, իսկ Հոկտեմբերյանի շրջանի Տանձուտ գյուղի կոլտնտեսության կթվորուհի Թամար Ալեքսանյանը ռեկորդ է սահմանել՝ կթել է 6.015 կիլոգրամ կաթ:

Կամոյի շրջանի Բատիկյանի սովխոզում Հարություն Շաքարյանի ղեկավարած դաշտավարական բրիգադը մեկ հեկտարից ստացել է 345 ցենտներ կարտոֆիլ: Արարատի շրջանի Վանաշեն գյուղի կոլտնտեսությունում Երվանդ Սարգսյանի բրիգադը յուրաքանչյուր հեկտարից ստացել է 376 ցենտներ խաղող, Ախուրյանի շրջանի Ազատան գյուղի կոլտնտեսության օղակավարուհի Նյուրա Ստամբոլցյանը՝ 615 ցենտներ շաքարի ճակնդեղ: Արտաշատի շրջանի Վերին Արտաշատի կոլտնտեսության օղակավարուհի Մելանյա Գևորգյանը յուրաքանչյուր հեկտարից ստացել է 1392 ցենտներ պոմիդոր: Այս թվարկումը կարելի է շարունակել: Ահա թե ումից պետք է օրինակ վերցնել:

Մեզ մոտ շատ են և այն տնտեսությունները, որոնց կոլեկտիվները, աշխատելով ստեղծագործաբար, նախաձեռնողաբար, մշտապես հասնում են վերջնական բարձր արդյունքների:

Ձեռք բերված հաջողությունները արգասիք են նաև կուսակցության շրջանային կոմիտեների, սկզբնական կուսկազմակերպությունների նպատակասլաց աշխատանքի: Հետևողականորեն իրագործելով ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան և 1985 թվականի ապրիլյան պլենումների որոշումները՝ նրանք սկսել են ավելի ակտիվորեն կենսագործել կուսակցության արդի ագրարային քաղաքականությունը, բարձրացրել են ագրոարդյունաբերական համալիրի ղեկավարման մակարդակը:

Դրա հետ մեկտեղ Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն գտնում է, որ ստացված արդյունքները չեն համապատասխանում առկա հնարավորություններին, այն կապիտալ ներդրումներին, որ հատկացվում են ագրոարդյունաբերական համալիրի զարգացմանը: Մեզ չեն կարող գոհացնել արտադրության ինտենսիվացման և դրա արդյունավետության բարձրացման այսօրվա տեմպերը:

Նյութատեխնիկական և տնտեսական աճած հնարավորությունները բացա-







ները, ձախողվում նոր այգիների հիմնման պլանները։ Թումանյանի, Բաղրամյանի, Եղեգնաձորի, Աշտարակի, Իջևանի, Մասիսի շրջաններում մշակության ագրոտեխնիկայի ցածր մակարդակի պատճառով խաղողի միջին բերքատվությունը հնգամյակում չի անցել 28—58 ցենտներից։

Առանձնակի մտահոգություն են պատճառում ճյուղի զարգացման դանդաղ տեմպերն այնպիսի խոշոր ավանդական խաղողագործական շրջաններում, ինչպիսիք են Հոկտեմբերյանը, Արարատը և Արտաշատը, ինչը հանգեցրել է պլանային առաջադրանքների թերակատարման։ Շրջկոմների առաջին քարտուղարներ ընկ. ընկ. Ա. Վարդանյանին, Օ. Հակոբյանին և Կ. Հովհաննիսյանին սա պետք է ստիպի լրջորեն խորհել։ Այդ շրջաններում խաղողի արտադրության ծավալների մեծացման հսկայական հնարավորություններ կան և դրանք պետք է գործի դրվեն։

Կուսակցության շրջկոմները, շրջսովետների գործկոմները պետք է միջոցներ ձեռնարկեն բնակչության անձնական օժանդակ տնտեսություններում խաղողի արտադրության ծավալների կրճատում թույլ չտալու համար։

Ի կատարումն հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ պայքարի վերաբերյալ կուսակցության ու կառավարության որոշումների, պետագրոարդը պետք է մեծ աշխատանք տանի խաղողագործության և գինեգործական արդյունաբերության վերապրոֆիլավորման նպատակով։ Անհրաժեշտ է տասներկուերորդ հնգամյակում արմատապես վերակառուցել խաղողի այգիները, ընդարձակել ունիվերսալ սպիտակ սորտերի, ինչպես նաև սեղանի սորտերի խաղողի այգիները։

Դեռևս ոչ քիչ թերություններ կան անասնապահության բնագավառում։ Դրա զարգացման տեմպերը չեն համապատասխանում առկա ռեզերվներին և հնարավորություններին։ Հանրապետությունում կաթի արտադրությամբ զբաղվող 716 կոլտնտեսությունների, սովխոզների և միջտնտեսությունների 22,5 տոկոսում մեկ կովի միջին կաթնատվությունը կազմում է 840-ից մինչև 1.650 կիլոգրամ, տնտեսությունների միայն 7,5 տոկոսն է մեկ կովից ստանում 3.000—4.000 կիլոգրամ կաթ և ընդամենը 6 տնտեսություններ՝ ավելի քան 4 հազար կիլոգրամ։

Լուրջ թերություններ կան հանրային հոտի վերարտադրության կազմակերպման գործում։ Մի շարք շրջաններ անբավարար են կատարում կովերի գլխաքանակի ավելացման մասին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության կառավարության համատեղ որոշումները։ Վերջին տարիներս հանրային հոտի մեջ կովերի տեսակարար կշիռը չի անցնում 32—33 տոկոսից։ Կրասնոսելսկի շրջանի տնտեսություններում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ս. Նազինյան) այն կազմում է 27,2, Գորիսի շրջանի տնտեսություններում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ռ. Ալեքսանյան)՝ 27,7 տոկոս։ 1985 թվականին հանրապետությունում կովերի ստերջությունը կազմել է 22 տոկոս, մայր ոչխարներինը՝ 19 տոկոս։ Թումանյանի շրջանում (շրջկոմի նախկին քարտուղար՝ ընկ. Ս. Սիմոնյան) և Ամասիայի շրջանում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ի. Բաղիրով) կովերի ստերջությունը կազմում է 37 տոկոս, Գուգարքի շրջանում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Լ. Բաղդասարյան) և Սիսիանի շրջանում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Շ. Դավթյան)՝ 31 տոկոս, Նոյեմբերյանի շրջանում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ս. Պետրոսյան)՝ 32 տոկոս, Սպիտակի շրջանում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Հ. Մկրտչյան)՝ 29 տոկոս։ Դրա հետևանքով տնտեսություններն ամեն տարի պակաս են ստանում տասնյակ հազարավոր հորթեր ու գառներ։

Հանրապետությունում առայժմ վատ է իրականացվում նաև երինջների նպատակային աճեցման աշխատանքը։

Թերի են օգտագործվում անասնապահական համալիրների և թռչնաֆաբրիկաների արտադրական կարողությունները։ Թռչնաֆաբրիկաների կարողությունները ծանրաբեռնված են 57—65 տոկոսով, իսկ խոզերի բտման համալիրներինը՝ 57 տոկոսով։ Խիստ անմխիթար է շատ տնտեսությունների անասնաբուժական-սանիտարական ապահովման գործի դրվածքը։ Զանազան



հիվանդությունների պատճառով վերջին 10 տարում հարկադրական մորթի է հանձնվել տասնյակ հազարավոր գլուխ անասուն։

Ներտնտեսային կարիքների համար մորթվում են քաշային ցածր կոնդիցիաների մեծ քանակությամբ անասուններ։ Խոշոր եղջերավոր անասունների, խոզերի ու ոչխարների միջին օրական քաշաճը 35—40 տոկոսով ցածր է օպտիմալից։ Հաշվարկները ցույց են տալիս, որ միայն թվարկած ուղիներով ռեսուրսների կորուստները կազմում են տարեկան շուրջ 20—30 հազար տոննա։ Ահա թե որտեղ են ռեզերվները։

Անասնապահության ինտենսիվացումը անկարելի է առանց կերարտադրության համապատասխան ինտենսիվացման։ Սակայն ոչ բոլոր կուսշրջկոմներն են հետևողական աշխատանք տանում այդ ասպարեզում։ Մի շարք շրջաններում կերարտադրությանը վերաբերվում են որպես երկրորդական ճյուղի։ Ազիզբեկովի, Թալինի, Եղեգնաձորի, Մարտունու, Թումանյանի, Սիսիանի և այլ շրջանների տնտեսությունների մեծ մասում բավարար միջոցներ չեն ձեռնարկվում կոշտ և հյութալի կերերով անասուններն ապահովելու համար, մշտապես ապավինում են պետական ռեսուրսներից ստացվելիք օգնությանը։ Հարկավոր է ամենուրեք վճռականորեն պայքարել խնամառուական տրամադրությունների դեմ և ընդհուպ զբաղվել կերարտադրության ինտենսիվացման, սեփական կերատեսակների ծավալների մեծացման հարցերով։ Դրա համար հնարավորություններ կան առանց բացառության բոլոր շրջաններում և տնտեսություններում։

Դեռևս ոչ քիչ թերություններ կան կերի արտադրության, կուտակման ու պահպանման գործում, ինչը հանգեցնում է դրա որակի իջեցման, սննդարար նյութերի մեծ կորուստների։ Հարկավոր է տասներկուերորդ հնգամյակում ապահովել կերի պահպանման անհրաժեշտ բազայի ստեղծումը յուրաքանչյուր տնտեսությունում, ամենավճռական միջոցները ձեռնարկել կերի որակի բարձրացման համար։

Լրիվ չեն վերացված ցածրորակ համակցված կերերի թողարկման փաստերը։ Հացամթերքների մինիստրության (մինիստր՝ ընկ. Ռ. Շահբազյան) ձեռնարկությունները հաճախ են խախտում թողարկվող արտադրանքի սահմանված ստանդարտները։

Խոր մտահոգություն է պատճառում բնական կերահանդակների վիճակը։ Անսիստեմ օգտագործման պատճառով նկատելիորեն վատացել է խոտհարքների և արոտավայրերի կուլտուր-տեխնիկական վիճակը, որի հետևանքով արոտավայրային շրջանում անասունների մթերատվությունը փաստորեն չի ավելանում։

Այս թերությունների վերացումը կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների, պետագրոարդի և նրա տեղական մարմինների առաջնահերթ խնդիրն է։

Անհրաժեշտ է այսուհետև էլ աջակցել ձեռնարկությունների և կազմակերպությունների օժանդակ գյուղական տնտեսությունների զարգացմանը, օգնություն ցույց տալ բնակչության անձնական օժանդակ տնտեսություններին՝ արոտավայրեր հատկացնելու, կերեր, սերմացու, պարարտանյութեր, մատղաշ անասուններ ու թռչուններ վաճառելու միջոցով, բարելավել բնակչությունից գյուղատնտեսական մթերքների ավելցուկների գնումների կազմակերպումը։

Ջկնատնտեսության պետական կոմիտեն (նախագահ՝ ընկ. Հ. Կարապետյան) պետք է ավելի լրիվ օգտագործի ապրանքային ձկնաբուծության զարգացման ռեզերվներն ու հնարավորությունները, բարելավի լճակների տեխնիկական վիճակը, բարձրացնի դրանց մթերատվությունը, մեծացնի բնակչությանը թարմ ձուկ վաճառելու ծավալները։

Անտառատնկումների տարածությունների ընդարձակման, անտառների, բուսական ու կենդանական աշխարհի պահպանության գործի բարելավման, պարենային ծրագրի կատարման գործում իր ավանդի մեծացման ուղղությամբ աշխատանքները պետք է ավելի ակտիվացնի հանրապետության ան-

տառային տնտեսության պետական կոմիտեն (նախագահ՝ ընկ. Մ. Արզումանյան)։

Եվս մի հարց։ Պետագրոարդը պետք է մշակի և իրականացնի ամենագործուն միջոցներ հողերի ամեն կարգի էրոզիայի դեմ պայքարելու համար, բարձրացնի բոլոր տնտեսությունների և ծառայությունների պատասխանատվությունը այդ գործում։

Բարելավման կարիք ունի պետագրոարդի սննդի արդյունաբերության ճյուղերի աշխատանքը։ Շատ ձեռնարկություններում դեռևս չեն ապահովվում հումքի կոմպլեքսային, անթափոն օգտագործումը, բարձրորակ և լայն տեսականու արտադրանքի թողարկումը, թույլ են տրվում հումքի և արտադրանքի մեծ կորուստներ։

Հանրապետության Մինիստրների խորհուրդը, պետագրոարդը պետք է ամենաեռանդուն միջոցներ ձեռնարկեն գյուղատնտեսական արտադրանքի պահպանման բազայի ամրապնդման և վերամշակող արդյունաբերության արագ զարգացման, նրա տեխնիկական վերազինման, վերամշակող արդյունաբերության մեջ անթափոն տեխնոլոգիաների ակտիվ ներդրման, արտադրանքի որակի շեշտակի բարձրացման ապահովման համար։ Հարկավոր է արագացնել գինու և օղու ձեռնարկությունների մի մասը ոչ ոգելից խմիչքների, հյութերի, օշարակների և բնակչության շրջանում պահանջարկ վայելող այլ սննդամթերքների թողարկման վերապրոֆիլավորելու գործը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի մշակած միջոցառումների իրականացման շնորհիվ նկատելիորեն ամրապնդվել է տնտեսությունների էկոնոմիկան։ Սակայն, չնայած դրան, կոլտնտեսությունների և սովխոզների մի մասը դեռևս աշխատում է վնասով։ Դա անթույլատրելի է։ Անհրաժեշտ է հետևողականորեն պակասեցնել գյուղատնտեսական արտադրանքի արտադրության թե՛ նյութական և թե դրամական ծախսումները, իջեցնել ինքնարժեքը։ Մի՞թե նորմալ է, որ, օրինակ, 1984 թվականին Եղեգնաձորի և Ազիզբեկովի շրջանների որոշ տնտեսություններում խոշոր եղջերավոր անասունների մեկ տոննա քաշաճի ինքնարժեքը կազմել է 7 հազար ռուբլի, Թալինի, Արարատի և այլ շրջանների առանձին տնտեսություններում մեկ տոննա կաթինը՝ 560—600 ռուբլի և այլն։

Կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկայի ամրապնդման գործում մեծ նշանակություն ունի կոլեկտիվ կապալի ու տնտհաշվարկի ներդրումը, ինչով մենք դեռևս ակտիվորեն չենք զբաղվում և գտնվում ենք երկրում վերջին տեղերից մեկում։ Անհրաժեշտ է մոտ ժամանակներս աշխատանքի կազմակերպման այդ առաջավոր ձևը դարձնել հիմնականը՝ բրիգադները փոխադրելով ներտնտեսային հաշվարկի։

Պետագրոարդը, կուսակցության շրջկոմները և շրջսովետների գործկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները պետք է ապահովեն բարձրշահավետ տնտեսավարում արտադրության բոլոր ճյուղերում։

Մեր կարևորագույն խնդիրն է էապես ուժեղացնել ագրոարդյունաբերական համալիրի գիտական ապահովումը, գիտնականների ուշադրությունը կենտրոնացնել սելեկցիոն ու տոհմաբուծական գործի բարելավման, նորագույն տեխնոլոգիաների, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության առաջադիմական ձևերի մշակման ու ներդրման, տնտեսական հարաբերությունների և մեխանիզմի կատարելագործման վրա։

Հանրապետության պետպլանը, պետագրոարդը, գիտությունների ակադեմիան, կուսակցական և սովետական մարմինները պետք է այս հարցերը պահեն չթուլացող վերահսկողության տակ, ապահովեն առաջնային ուղղությունների արագ զարգացումը՝ գիտական հետազոտությունները իրականացնելիս, զգալիորեն ամրապնդեն գիտության կապը արտադրության հետ։

Կուսակցության շրջկոմները, շրջգործկոմները, պետագրոարդը, համապատասխան մինիստրություններն ու գերատեսչությունները, հաշվի առնելով նոր խնդիրները, պետք է հաստատակամորեն ձգտեն գյուղի սոցիալ-տնտեսական զարգացման պլանների լրիվ իրականացման, կոլտնտեսություններում և սովխոզներում կայուն աշխատավորական կոլեկտիվների ստեղծման, կոմպլեքսային միջոցառումներ իրականացնեն կադրերի պատրաստումը կատարելագործելու, նրանց պրոֆեսիոնալ մակարդակը բարձրացնելու համար։ Անհրաժեշտ է ուժեղացնել ուշադրությունն ու հոգատարությունը տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների նկատմամբ, ստեղծել այնպիսի մթնոլորտ, որ նրանք ստեղծագործական մոտեցում ու ձեռներեցություն հանդես բերեն աշխատանքում։

Մենք, ընկերներ, պետք է միջոցներ ձեռնարկենք, որպեսզի գյուղում աճի ու ամրանա մտավորականությունը։ Անհրաժեշտ է ամենալայն հնարավորություններ ու արտոնյալ պայմաններ ստեղծել բարձրագույն ուսումնական հաստատություններում գյուղական երիտասարդության ուսման համար, ընդ որում՝ բոլոր մասնագիտությունների գծով։ Դա ռեալ նախադրյալներ կստեղծի գյուղի հետագա զարգացման համար։

Հանրապետությունում գյուղատնտեսության և ագրոարդյունաբերական համալիրի մյուս ճյուղերի կառավարումը բարելավելու նպատակով ստեղծվել է Հայկական ՍՍՀ պետական ագրոարդյունաբերական կոմիտե։ Պետագրոարդին հարկավոր է արագ ավարտել վերակառուցումը վերից վար, անհապաղ ձեռնամուխ լինել հենց ընթացիկ տարվա գարնանացանի կոնկրետ խնդիրների լուծմանը։

Մեր գլխավոր խնդիրն է՝ իրականացնել ամբողջ գյուղատնտեսական արտադրության, ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ճյուղերի մասշտաբային փոխադրումը զարգացման ինտենսիվ ուղի։ Այդ խնդրի կատարումը պետք է դառնա ինչպես պետագրոարդի, այնպես էլ հանրապետական, տեղական մյուս կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների ու կազմակերպությունների ամբողջ կազմակերպչական քաղաքական ու տնտեսական աշխատանքի առանցքը։

Թույլ տվեք հաստատ համոզմունք հայտնել, որ ագրոարդյունաբերական համալիրի աշխատողները ջանք ու եռանդ չեն խնայի տասներկուերորդ հնգամյակում նոր բարձր ցուցանիշների հասնելու համար։

Ընկերնե՛ր։

Կենտկոմը հետևողականորեն աշխատել է հանրապետությունում կապիտալ շինարարության կատարելագործման ուղղությամբ։ Հաշվետու ժամանակաշրջանում ֆինանսավորման բոլոր աղբյուրների գծով ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումներն ավելացել են 23 տոկոսով։

Իրականացվել է ինչպես արտադրական, այնպես էլ սոցիալական և կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարության լայն ծրագիր։

Շահագործման են հանձնվել «Կանազի» ֆոլգագլանման արտադրության, Չարենցավանի ավտոբեռնիչների գործարանի ավտոբեռնիչների արտադրության և չուգունի ձուլման, «Մասիս» արտադրամիավորման կոշիկի № 1 ֆաբրիկայի նոր կարողությունները, Մարալիկի բամբակամանվածքային ֆաբրիկան, Բաղրամյանի շրջանի ալրաղաց ձեռնարկությունը, Երևանի մետրոպոլիտենի նոր կայարաններ, Երևանի «Զվարթնոց» և «Էրեբունի», Լենինականի և Գորիսի օդանավակայանները, Երևանի մարզահամերգային համալիրը, 134 կիլոմետր երկաթուղիներ ու 364 կիլոմետր ավտոխճուղիներ և բազմաթիվ այլ օբյեկտներ։

Ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին կառուցվել և շահագործման են հանձնվել 5,4 միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ, որը հնարավորություն է տվել բարելավելու ավելի քան 117 հազար ընտանիքների բնակարանային պայմանները, վերացնելու մոտ 100 հազար քառակուսի մետր բարաքներ ու նկուղային կացարաններ։ Շահագործման են հանձնվել 76,6 հազար աշակերտական տեղով նոր հանրակրթական դպրոցներ, 31,6 հազար տեղով մանկական նախադպրոցական հիմնարկներ, 3,4 հազար մահճակալով հիվանդանոցներ, 4,5 հազար հաճախումների համար նախատեսված պոլիկլինիկաներ։

Հետագա զարգացում է ստացել շինարարական ինդուստրիայի բազան։ Հնգամյակի ընթացքում շինարարության մեջ աշխատանքի մեքենազինվածու-

թյունը մեծացել է 1,1 անգամ, աշխատանքի արտադրողականությունը բարձ-
րացել է 23 տոկոսով:
Դրա հետ մեկտեղ հանրապետությունում կապիտալ շինարարության վի-
ճակը մեզ առայժմ չի գոհացնում:
Տակավին ցածր է կապիտալ ներդրումների արդյունավետությունը: Կա-
տարելագործման կարիք ունի դրանց վերարտադրողական և տեխնոլոգիական
կառուցվածքը: Դեռևս առկա են նյութական, ֆինանսական և աշխատանքային
ռեսուրսների փոշեցրման փաստեր:
Հանրապետության հիմնական կապալային մինիստրություններն ու գե-
րատեսչությունները, այդ թվում՝ արդյունաբերական շինարարության մինիս-
տրությունը (մինիստր՝ ընկ. Ռ. Մելիքյան), մոնտաժային ու հատուկ շինա-
րարական աշխատանքների գլխավոր վարչությունը (պետ՝ ընկ. Հ. Ղամբար-
յան), պետագրոարդի շինարարական ստորաբաժանումները (ընկ. Գ. Թադե-
վոսյան), «Հայգլխջրշինը» և այլ կազմակերպություններ դանդաղ են իրակա-
նացնում անցումը տնտեսավարման ինտենսիվ մեթոդների, զգալի վրիպում-
ներ ու թերություններ են թույլ տալիս շինարարական արտադրության նա-
խապատրաստման և կազմակերպման գործում: Մինիստրությունների ու գե-
րատեսչությունների ցածր պահանջկոտության և առանձին շինմոնտաժային
տրեստների ու վարչությունների, ինչպես նաև պատվիրատու ձեռնարկություն-
ների ու կազմակերպությունների ղեկավարների անպատասխանատվության
պատճառով հաճախ ձախողվել է շինմոնտաժային աշխատանքների պլանների
կատարումը, խախտվել են շինարարության նորմատիվային ժամկետները, չի
ապահովվել օբյեկտների և կարողությունների ժամանակին գործարկումը:
Հանրապետությունում պետական կապիտալ ներդրումների պլաններն
ամեն տարի կատարվել են 94—98 տոկոսի, հիմնական ֆոնդերի գործարկման
պլանները՝ 77—86 տոկոսի սահմաններում: Չի կատարված մանկական-նա-
խադպրոցական և բժշկական հիմնարկները շահագործման հանձնելու հնգամ-
յա առաջադրանքը: Անավարտ շինարարության ծավալը հնգամյակի վերջերին
կազմել է մոտ 1,3 միլիարդ ռուբլի, որն զգալիորեն ավելի է նորմատիվից:
Դեռևս լիովին չի լուծված բարաքների և խարխուլ բնակֆոնդի վերաց-
ման հարցը:

Դեռևս ցածր է շինարարական արտադրության տեխնիկական և տեխնո-
լոգիական հագեցվածության մակարդակը: Անբավարար են օգտագործվում
շինարարական մեքենաներն ու մեխանիզմները: Դանդաղ է մեքենայացվում
ձեռքի աշխատանքը:
Հողային, բեռնման-բեռնաթափման և որոշ այլ աշխատանքների մեքե-
նայացման մակարդակը մեծապես ետ է մնում միջին միութենական ցուցա-
նիշներից: Պակասել է կարողության մեկ միավորի հաշվով էքսկավատորների
և բուլդոզերների արտադրողականությունը: Շինարարական նշանակության
հիմնական ֆոնդերի ֆոնդահատույցն իջել է 11 տոկոսով:
Արդի պահանջներին չի համապատասխանում շինարարական ինդուս-
տրիայի և շինանյութերի արդյունաբերության ձեռնարկությունների բազան:
Դրանց կեսից ավելին պոլիգոնային տիպի արտադրություններ են՝ պարզու-
նակ տեխնոլոգիայով և տեխնիկական ցածր հագեցվածությամբ: Անբավարար
են օգտագործվում խոշորապանել տնաշինության կարողությունները:

Շինարարական կազմակերպություններում, շինարարական ինդուստրիա-
յի ձեռնարկություններում դեռևս ակտիվ պայքար չի մղվում նյութական, աշ-
խատանքային և վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողության համար,
լուրջ թերություններ կան աշխատանքի նորմավորման գործում, թույլ են տր-
վում հավելագրումներ, տարբեր կարգի անարտադրողական ծախսումներ, սո-
ցիալիստական սեփականության վատնման ու հափշտակման փաստեր:

Բավարար ուշադրություն չի նվիրվում շինարարական արտադրության մեջ
բրիգադային կապալի ներդրմանը: Հնգամյակի ընթացքում տնտեսական հաշ-
վարկի մեթոդով և մյուս առաջադիմական եղանակներով աշխատող բրիգադ-
ների թիվը կազմել է ընդամենը 40 տոկոս:
Շինարարական մինիստրությունների, տրեստների ու վարչությունների



ղեկավարները, կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները
դեռևս ինչպես հարկն է չեն հոգում բանվորների աշխատանքի ու կենցաղի
պայմանների բարելավման մասին: Կառույցների մեծ մասում չեն ստեղծվում
ճաշարաններ, ցնցուղարաններ, հանդստի սենյակներ, այլ անհրաժեշտ պայ-
մաններ: Այս ամենը հանգեցնում է կադրերի մեծ հոսունության, խանգարում
աշխատավորական կայուն կոլեկտիվների ստեղծմանը:
Կատարելագործման կարիք ունի շինարարության կառավարման համա-
կարգը: Անհրաժեշտ է հասնել հիմնական օղակների՝ շինմոնտաժային տրեստ-
ների արտադրատնտեսական ինքնուրույնության հետագա ամրապնդման ու
ընդլայնման:
Կուսակցության որոշ քաղկոմներ ու շրջկոմներ դեռևս հարկ եղածին պես
խորամուխ չեն լինում կառույցների գործերի վիճակի մեջ, շինարարական և
մոնտաժային ստորաբաժանումների կուսակցական կազմակերպություններին
անբավարար են օգնում շինմոնտաժային աշխատանքների պլանների կատար-
ման համար կոլեկտիվների ջանքերը մոբիլիզացնելու, պատշաճ կերպով չեն
վերահսկում օբյեկտների կառուցման ընթացքը:
Այս հարցում լուրջ հանդիմանության են արժանի Կալինինոյի, Ազիզբե-
կովի, Թումանյանի, Կրասնոսելսկի, Ամասիայի, Նոյեմբերյանի և մի շարք
այլ կուսշրջկոմներ:
Շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը (մինիստր՝ ընկ.
Լ. Ղազարյան) չի ապահովում առանձին արտադրատեսակների պլանների կա-
յուն կատարումը, դրանց բարձր որակը: Համակարգի ձեռնարկություններում
նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի ներդրումն իրականացվում է
փոքր մասշտաբներով, որոնք շոշափելիորեն չեն ներազդում գործերի ընդհա-
նուր վիճակի վրա:
Արմատական բարելավում է պահանջում շինարարության որակը: Այն
բարձրացնելու համար շինարարական մինիստրությունների ու գերատեսչու-
թյունների, շինարարական ստորաբաժանումների կուսակցական կազմակեր-
պությունների ու ղեկավարների կողմից ձեռնարկվող միջոցները դեռևս չեն
տալիս ցանկալի արդյունքներ: Ցածր որակի հիմնական պատճառներն են շի-
նարարական արտադրության և շինարարական ինդուստրիայի տեխնոլոգիա-
կան թույլ հագեցվածությունը, աշխատանքի և արտադրության անբավարար
կազմակերպումը, աշխատանքային և տեխնոլոգիական ցածր կարգապահու-
թյունը, անբարեխիղճ վերաբերմունքը գործի նկատմամբ: Անհրաժեշտ է հե-
տևողականորեն վերացնել այդ բոլոր թերությունները: Հարկավոր է կառուցել
և՛ արագ, և՛ որակով: Սա պետք է լինի մեր կուսակցական կոմիտեների և
կազմակերպությունների, բոլոր շինարարների նշանաբանը տասներկուերորդ
հնգամյակում:
Պետք է ամենագործուն միջոցներ ձեռնարկել նախագծային կազմակեր-
պությունների աշխատանքը բարելավելու, նախագծանախահաշվային գործը
կատարելագործելու համար: Նախագծերում միշտ չէ, որ իրենց արտացոլումն
են գտնում գիտության ու տեխնիկայի նվաճումները, առաջավոր փորձը,
դրանցից շատերում չկան ճարտարապետական և ինժեներային առաջադիմա-
կան լուծումներ, չի նախատեսվում տեխնոլոգահարմար և խնայողական
կոնստրուկցիաների, նոր բարձրարդյունավետ նյութերի կիրառում:
Նախագծման որակը ցածր է «Հայարդնախագիծ», «Հայգյուղպետնախա-
գիծ», «Հայտրանսպետնախագիծ» և մի շարք այլ ինստիտուտներում:
Դեռևս կան այնպիսի օբյեկտների նախագծանախահաշվային փաստա-
թղթերի մշակման դեպքեր, որոնց շինարարությունը չի թելադրված առաջնա-
հերթ անհրաժեշտությամբ:
Հանրապետության պետշինը (նախագահ՝ ընկ. Լ. Բեգլարյան) գործուն
միջոցներ չի ձեռնարկում նախագծման տեխնիկական մակարդակի, արդյունա-
վետության ու որակի բարձրացման, փորձաքննության և հեղինակային հըս-
կողության դերի մեծացման համար: Նախագծային կազմակերպությունները
թույլ են հագեցված նախագծման արդիական տեխնիկայով, այդ թվում՝ էլեկ-
տրոնային հաշվիչ մեքենաներով, ինչը չի նպաստում նախագծողների աշխա-

խումը։ Ետ են մնում սպասարկումների նաև այնպիսի տեսակներ, ինչպիսիք են հագուստի անհատական պատվերները, կենցաղային տեխնիկայի, կահույքի նորոգումը, լվացքատների, լուսանկարչատների և այլ ծառայությունները։

Հանրապետության կենցաղի ոլորտի աշխատողների իրենց գլխավոր խնդիրը պետք է համարեն ամենուրեք համալիր կենցաղային սպասարկման համակարգի կազմակերպումը, սպասարկման որակի ու կուլտուրայի բարձրացումը, հատկապես լեռնային ու նախալեռնային շրջաններում, պատվերների կատարման ժամկետների կրճատումը, բնակչության սպասարկման նոր, առաջադիմական ձևերի ներդրումը։ Հանրապետության Մինիստրների խորհրդին առընթեր ստեղծված նոր ստորաբաժանումը պետք է հասնի արմատական բեկման և ինչպես հարկն է ծավալի բնակարաններն ու այգետնակները բնակչության պատվերներով նորոգելու ու կառուցելու գործը։ Պետք է ամրապնդվի անհատական օգտագործման ավտոմոբիլների սպասարկման նյութատեխնիկական բազան։ Հարկ է հետևողականորեն բարելավել բնակչության հանգստի կազմակերպումը։

Առհասարակ, ընկերներ, մենք պետք է ավելի ակտիվորեն զբաղվենք հանրապետությունում վճարովի սպասարկումների զարգացումով։ Ներկայումս մեզանում դրամական եկամուտները առավելապես ծախսվում են ապրանք ձեռք բերելու համար։ Բայց չէ՞ որ այստեղ հագեցման որոշակի սահման կա։ Իսկ հանրապետությունում սպասարկման նպատակով բնակչության ծախսումները շատ ցածր են։

Անհրաժեշտ է հետևողականորեն իրագործել ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և բնակչության սպասարկման ոլորտի զարգացման կոմպլեքսային ծրագիրը, ապահովել կենցաղային սպասարկման ձեռնարկությունների արդյունավետ աշխատանքը նոր պայմաններում, ընդլայնել առևտրի ծառայությունների ցանցը անմիջականորեն ձեռնարկություններում։

Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները պետք է սպասարկման ոլորտի ճյուղերի աշխատանքը պահեն իրենց ուշադրության կենտրոնում, մշտապես հիշելով, որ դրանք գործ ունեն մարդկանց հետ՝ նրանց բազմազան ճաշակների ու ցանկությունների, նրանց տրամադրության հետ։ Սպասարկման ցածր կուլտուրան, ապրանքների սպեկուլյացիան, գնորդներին խաբելը, թերակշռումը, դրամաշորթությունը և մյուս չարաշահումները հարուցում են բնակչության արդարացի բողոքն ու վրդովմունքը։ Նման երևույթներ թույլ չտալու, դրանք արմատախիլ անելու համար պետք է առաջին հերթին անձնական պատասխանատվություն կրի սպասարկման ոլորտի ամեն մի ղեկավար, դրա համար պետք է պայքարի յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն։

Այս ուղղությամբ պետք է ավելի հետևողականորեն աշխատեն քաղաքային ու շրջանային, հատկապես մայրաքաղաքի կուսակցական կոմիտեները։ Նրանք պետք է միաժամանակ բարձրացնեն աշխատավորների ակտիվությունը նման երևույթների դեմ մղվող պայքարում։ Այստեղ իրենց վճռական խոսքը պետք է ասեն նաև վարչական և ժողովրդական վերահսկողության մարմինները։

Ընկերնե՛ր։

Ժողովրդի առողջական վիճակը ավելի ու ավելի է դառնում նրա բարեկեցության մակարդակի կարևորագույն ցուցանիշներից մեկը։ Եվ բնականաբար առողջապահության զարգացումը, նրա նյութատեխնիկական բազայի ամրապնդումը եղել են հանրապետական կուսակցական կազմակերպության ուշադրության կենտրոնում։ Հնգամյակի տարիներին գործարկվել են բժշկական շատ նոր հիմնարկներ, բարձրացել է դրանց հագեցումը բուժման ու ախտորոշման արդիական ապարատներով, սարքավորումներով և գույքով։

Անցած տարիներին առողջապահության պրակտիկայում ներդրվել են առավել տարածված հիվանդությունների կանխման, ախտորոշման և բուժման ավելի արդյունավետ միջոցներ ու մեթոդներ։ Նվազել է ընդհանուր հիվանդացությունը, բարելավվել են բնակչության առողջության ցուցանիշները։



Այնուհանդերձ, բժշկական սպասարկման առկա մակարդակը լրիվին չի համապատասխանում մեր օրերի աճող պահանջներին։

Առողջապահության մինիստրությունը (մինիստր՝ ընկ. Է. Գաբրիելյան) և շինարարները արժանի են քննադատության առողջապահության նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը հատկացված կապիտալ ներդրումները լրիվ չիրացնելու համար, այն ժամանակ, երբ 10 հազար բնակչին ընկնող հիվանդանոցային մահճակալների թվով հանրապետությունը երկրում գտնվում է վերջին տեղում, բժշկական շատ հիմնարկներ, հատկապես գյուղական վայրերում, աշխատում են նեղ պայմաններում, անհարմար շենքերում, վատ են կահավորված։

Լուրջ թերություններ և վրիպումներ կան բնակիչների, հատկապես կանանց ու երեխաների բուժպրոֆիլակտիկ սպասարկման գործում, սանիտարահակահամաճարակային ծառայության աշխատանքում։ Բժշկական կադրերով հանրապետության լավ ապահովվածության պայմաններում առանձին շրջաններում զգացվում է դրանց պակասը։ Բժիշկներով հատկապես անբավարար են ապահովված շտապ օգնության կայանները։ Կուսակցական կազմակերպությունների դաստիարակչական թույլ աշխատանքի և ղեկավարների ցածր պահանջկոտության հետևանքով առանձին բուժհիմնարկներում շարունակում են տեղ գտնել բժշկական էթիկայի խախտման դեպքեր և զանազան բացասական երևույթներ, այդ թվում՝ կաշառակերության, դրամաշորթության, դեղորայքի սպեկուլյացիայի փաստեր։

Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները, առողջապահության մինիստրությունը, սովետական, արհմիութենական մարմինները պետք է ամենագործուն միջոցներ ձեռնարկեն շուտափույթ կերպով վերացնելու հիշյալ թերությունները, հասնելու ժամանակակից մակարդակով բժշկական օգնության նկատմամբ բնակչության պահանջմունքի ավելի լրիվ բավարարման, այդ օգնության որակի բարձրացման։ Նրանք պետք է հասնեն զգալի տեղաշարժերի առկա հնարավորությունների ինտենսիվ օգտագործման և իրենց գործունեության արդյունավետությունը բարձրացնելու ասպարեզում, ուժեղացնեն առողջապահության կանխարգելիչ ուղղվածությունը, հետևողականորեն իրականացնեն ստուգանական անցումը ամբողջ բնակչության ամենամյա դիսպանսերացման։

Անհրաժեշտ է այսուհետև էլ բարելավել բնակչության սոցիալական ապահովության գործը, զարգացնել դրա բազան, ավելի շատ հոգալ կենսաթոշակառուների, զառամյալների ու հաշմանդամների մասին, զոհված զինծառայողների ընտանիքների, Հայրենական պատերազմի հաշմանդամների մասին։

Ընկերնե՛ր։ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն լուրջ ուշադրություն է նվիրել գիտության զարգացմանը, արտադրության հետ նրա կապերի հետագա ամրապնդմանը, գիտական ու գիտամանկավարժական կադրերի պատրաստման կատարելագործմանը՝ որպես գիտատեխնիկական առաջադիմության արագացման կարևորագույն գործոնների։

Հանրապետությունում գործում են ավելի քան 100 գիտահետազոտական ինստիտուտ, 200 կոնստրուկտորական և հատուկ կոնստրուկտորական բյուրոներ։ Գիտության և գիտական սպասարկման ոլորտում զբաղված են տասնյակ հազարավոր մարդիկ, որոնցից ավելի քան 21 հազարը գիտական աշխատող է։ Հնգամյակի տարիներին նրանց թիվն ավելացել է գրեթե 11 տոկոսով։

Գործուն միջոցներ են ձեռնարկվել գիտական հետազոտությունների ինտենսիվացման, դրանց արդյունավետության բարձրացման, հիմնարար գիտությունների հետագա զարգացումն ապահովելու նպատակով։

Տասնմեկերորդ հնգամյակում մշակվել է միութենական և հանրապետական նշանակության 54 նպատակային կոմպլեքսային գիտատեխնիկական ծրագիր։ Հանրապետության գիտական կոլեկտիվները որոշակի ավանդ են ներդնում պարենային և էներգետիկ ծրագրերի կատարման գործում։

Գիտական և գործնական մեծ հետաքրքրություն են ներկայացնում աստղաֆիզիկայի, մաթեմատիկայի, մեխանիկայի, պինդ մարմնի ֆիզիկայի, ռադիոֆիզիկայի, տարրական մասնիկների ֆիզիկայի, քիմիական ֆիզիկայի

կենսաքիմիայի, մարդու և կենդանիների ֆիզիոլոգիայի և այլ բնագավառներում կատարված հիմնարար հետազոտությունները։ Մի շարք գիտական հետազոտությունների արդյունքները ներդրվել են ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում։

Ի կատարումն «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման, գիտությունների ակադեմիայի գիտական հիմնարկները, բուհերի ամբիոնները որոշակի աշխատանք են կատարել հասարակական գիտությունների բնագավառում հետազոտությունների պրոբլեմատիկան ու թեմատիկան արդիականացնելու համար, ինչի մասին ավելի մանրամասն դեռ կասվի։

Դրական տեղաշարժեր կան բուհական գիտության ասպարեզում։ Որոշ չափով բարելավվել է արտադրության մեջ գիտական մշակումների ներդրման կազմակերպումը։ Աշխուժացել է ճյուղային գիտության աշխատանքը։

Սակայն գիտությունների ակադեմիայի ինստիտուտների, ճյուղային գիտահետազոտական հիմնարկների ու բուհերի գործունեության մեջ հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի և գիտատեխնիկական առաջադիմության արագացման հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմում կայացած խորհրդակցության պահանջների լույսի ներքո, մենք դեռևս լուրջ վերափոխումների չենք հասել։ Հանրապետության գիտական պոտենցիալի օգտագործումը տակավին ցածր է նրա ունեցած հնարավորություններից։

Մենք շատ անելիքներ ունենք հիմնարար գիտությունների հետագա զարգացման գործում։ Գիտական հիմնարկներն առայժմ հարկ եղածին պես չեն ազդում հանրային արտադրության արդյունավետության, աշխատանքի արտադրողականության բարձրացման, հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման վրա։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը գիտությունների ակադեմիայի, մինիստրությունների ու գերատեսչությունների, գիտական հիմնարկների և բուհերի ուշադրությունը հրավիրել է հիմնարար և կիրառական հետազոտությունների մի շարք կարևորագույն ուղղություններում, այդ թվում՝ հանքային հումքի կոմպլեքսային օգտագործման, էներգիայի վերականգնվող աղբյուրների, տեսական կիբեռնետիկայի ու ռոբոտատեխնիկայի, գիտական սարքաշինության, անթափոն և ռեսուրսախնայող տեխնոլոգիաների, կենսատեխնոլոգիայի, տնտեսագիտական հետազոտություններում մաթեմատիկական մեթոդների կիրառման, սոցիոլոգիայի բնագավառներում նկատվող հապաղման վրա։

Գիտատեխնիկական առաջընթացի հանգուցային ուղղություններից է ինֆորմատիկայի և հաշվողական տեխնիկայի զարգացումը։ Մենք գիտաարտադրական զարգացած բազա ունեցող հանրապետություն ենք։ Այստեղ մենք երկրում ամենաառաջավոր բնագծեր դուրս գալու մեծ հնարավորություններ ունենք։ Սակայն մենք դրանք օգտագործում ենք ոչ բավարար, ոչ ռացիոնալ և ոչ կոմպլեքսայնորեն։

Նույնը կարելի է ասել նվազ էներգատար և նվազ նյութատար տեխնոլոգիաների ստեղծման, էներգիայի, ռեսուրսների կորուստների բացառման կապակցությամբ։ Դրանք այսօր կարևոր տեղ չեն գրավում գիտական հետազոտություններում։

Դանդաղ տեմպերով է աճում հետազոտությունների արդյունավետությունը։ Դրա հիմնական պատճառներից մեկը դարձյալ մնում է ուժերի ու միջոցների փոշեցրումը մեծաթիվ թեմաների վրա։ Լիովին հաղթահարված չէ մանրաթեմայնությունը։

Ներկայումս մի շարք գիտական հիմնարկներ՝ հատկապես ակադեմիական և բուհական, ապահովված չեն փորձնափորձառական բազայով, չունեն փորձնական արտադրություն, փորձառական տեղամասեր։ Գիտության ոլորտում զբաղված մեկ աշխատողի տեխնիկական զինվածության աստիճանը բնութագրող ցուցանիշներով հանրապետությունը զգալիորեն ետ է մնում միջին միութենական ցուցանիշներից։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացումը պահանջում է էական



փոփոխություններ մտցնել գիտության նկատմամբ մինիստրությունների ու գերատեսչությունների, տնտեսական ղեկավարների վերաբերմունքի մեջ։ Սակայն նրանցից շատերը առայժմ դանդաղ են վերակառուցվում, գիտական մշակումների արդյունքների պրակտիկ կիրառման գործում շարունակում են ցուցաբերել քարացածություն և անտարբերություն։

Մեզանում դեռևս անբավարար է օգտագործվում գիտատեխնիկական առաջընթացի արագացման նաև այնպիսի մի հզոր ռեզերվ, ինչպիսին է բուհական գիտությունը։ Բուհերում է կենտրոնացած հանրապետության գիտական աշխատողների շուրջ 40 տոկոսը, այնտեղ աշխատում են գիտությունների 340 դոկտորներ և ավելի քան 2.800 թեկնածուներ, մինչդեռ նրանց գիտական հետազոտությունների ու մշակումների ծավալը հանրապետությունում կատարվող գիտահետազոտական աշխատանքների ընդհանուր ծավալի 10 տոկոսից էլ չի անցնում։ Մենք միջին միութենական ցուցանիշներից 2—2,5 անգամ ետ ենք մնում նաև պրոֆեսորադասախոսական կազմի 100 մարդուն ընկնող այդ աշխատանքների ընդհանուր ծավալի առումով։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացումը հրամայաբար պահանջում է բարելավել ակադեմիական, բուհական և ճյուղային գիտության աշխատանքների կոորդինացումը, ամրապնդել նրանց կապերը, հասնել գիտական ու ինժեներական մտքի համախմբման, հստակորեն սահմանել մեր գիտության, նրա բոլոր ստորաբաժանումների առջև ծառացած խնդիրները։

Այս տեսակետից անհրաժեշտ ակտիվությամբ չի աշխատում Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիան (պրեզիդենտ՝ ընկ. Վ. Համբարձումյան), որի վրա են դրված ամբողջ հանրապետությունում գիտական հետազոտությունների կոորդինացման ֆունկցիաները։ Ակադեմիական գիտության գլխավոր, կենտրոնական խնդիրը հիմնարար հետազոտությունների գերադաս զարգացումն է առաջնային ուղղություններում։ Ճյուղային և բուհական գիտությունը պետք է առաջին հերթին զբաղվի ժողովրդական տնտեսության ճյուղերի տեխնիկական ու տեխնոլոգիական վերազինման խնդիրների լուծումով, ժամանակակից գիտական իմացությունը ինժեներական ու տեխնոլոգիական լուծումների մեջ մարմնավորելով, ժողովրդական տնտեսության գործնական պահանջմունքներին ծառայեցնելով։

Ինքը՝ գիտությունը, որպես ժողովրդատնտեսական խոշոր ճյուղ, նույնպես պետք է փոխադրվի ինտենսիվ զարգացման ուղի։ Անհրաժեշտ է գիտության մեջ զգալիորեն բարձրացնել աշխատանքի որակն ու արտադրողականությունը՝ նոր արդյունավետ ճանաչողական միջոցների, հետազոտությունների մեջ նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի օգտագործման հիման վրա։

Այս խնդիրների լուծումը պահանջում է կատարելագործել գիտության կառավարումը և նրա կազմակերպական մեխանիզմները, ապահովել վարչական, տնտեսագիտական ու սոցիալ-հոգեբանական գործոնների կոմպլեքսային օգտագործումը։

Հարկ է ակտիվորեն իրականացնել ծրագրանպատակային մոտեցումը գիտական հետազոտությունները պլանավորելու և կառավարելու, այդ հետազոտությունների նվաճումները պրակտիկայում ներդնելու հարցում։

Պետք է արագացնել փորձառական-արտադրական բազայի՝ գիտական հիմնարկների գործունեության արդյունավետության բարձրացման այդ հիմնական գործոններից մեկի զարգացումը։ Դա, բնականաբար, կպահանջի ժամանակ և միջոցներ։ Ուստի, այսօր պետք է հասնել այն բանին, որ ակադեմիական ինստիտուտները և բուհերը ճյուղային գիտահետազոտական ինստիտուտների և ձեռնարկությունների հետ համատեղ օգտագործեն վերջիններիս փորձառական-արտադրական բազան։

Ամենասևեռուն ուշադրության կարիք ունի գիտական ու գիտամանկավարժական կադրերի պատրաստումը, որի վիճակն այսօր մեզ չի կարող չանհանգստացնել։

Մտահոգություն է հարուցում հանրապետության գիտական ու գիտամանկավարժական կադրերի ընդհանուր թվի մեջ գիտական աստիճան ունեցող անձանց տեսակարար կշռի նվազումը, գիտական հիմնարկների և բուհերի

կոլեկտիվների ծերացման միտումը։ Ակադեմիական հիմնարկներում գիտությունների թեկնածուների միջին տարիքը 42,5 է։

Գիտական կադրերի պատրաստման վիճակը անմխիթարական է ճյուղային գիտահետազոտական, նախագծակոնստրուկտորական և տեխնոլոգիական կազմակերպություններում։ Գիտական աստիճան ունեցող կադրերով այդ կազմակերպությունների կոմպլեկտավորումն զգալիորեն զիջում է հանրապետության միջին ցուցանիշին։

Դեռևս ցածր է ասպիրանտուրայի արդյունավետությունը։ Նպատակային ասպիրանտուրայի ընդունելության պլանները շարունակաբար չեն կատարվում։

Հանրապետության գիտական պոտենցիալի հետագա մեծացումը, այդ պոտենցիալի օգտագործման արդյունավետության բարձրացումը, գիտատեխնիկական առաջընթացի արագացման ծրագրի իրացումը գիտական հիմնարկությունների և բուհերի սկզբնական կուսակցական կազմակերպություններից, կուսակցական, սովետական ու պետական մարմիններից պահանջում են նպատակասլաց, եռանդագին կազմակերպչական և քաղաքական աշխատանք։

Ընկերնե՛ր։

Հաշվետու ժամանակաշրջանում հետևողականորեն զարգացել ու կատարելագործվել է ժողովրդական կրթության համակարգը, դրական արդյունքներ են ձեռք բերվել բոլոր կարգի ուսումնական հաստատությունների ուսումնադաստիարակչական գործունեության կազմակերպման և բովանդակության մեջ։

Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի իրականացման կապակցությամբ կուսակցական կոմիտեները և կազմակերպություններն սկսել են ավելի շատ ուշադրություն նվիրել ժողովրդական կրթության հարցերին, ավելի նպատակամետ կազմակերպել դպրոցում տարվող գաղափարախոսական ու դաստիարակչական աշխատանքը։ Մանկավարժական շատ կոլեկտիվներ հիանալի հաջողությունների են հասել մատաղ սերնդի ուսուցման և դաստիարակման գործում։

Միջոցներ են ձեռնարկվել բարելավելու աշակերտների աշխատանքային դաստիարակությունը։ Բոլոր հանրակրթական դպրոցներին, ինչպես նաև պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններին կցվել են բազային ձեռնարկություններ ու կազմակերպություններ։ Նոր հարաբերություններ են ստեղծվում դպրոցի և արտադրության միջև, բարձրանում է նրանց ընդհանուր պատասխանատվությունը մատաղ սերնդի աշխատանքային, քաղաքացիական հասունացման գործի համար։

Սակայն դպրոցի ռեֆորմի ծավալման տեմպերը դեռևս պահանջվող թափը չեն ստացել։ Լուսավորության մինիստրությունը (ընկ. Ս. Հախումյան), ժողովրդական կրթության մարմինները, պրոֆտեխնիկական կրթության պետական կոմիտեն (ընկ. Հ. Քոթանջյան) իրենց աշխատանքը առայժմ դանդաղ են վերակառուցում դպրոցական ռեֆորմի պահանջների լույսի ներքո։

Մեզ չի կարող չանհանգստացնել ուսումնադաստիարակչական աշխատանքների վիճակը մի շարք դպրոցներում և պրոֆտեխուսումնարաններում։ Միշտ չէ, որ առաջադիմության բարձր ցուցանիշները արտացոլում են աշակերտների ռեալ գիտելիքները։ Դանդաղ է իրագործվում դասավանդման ձևերի ու մեթոդների վերակառուցումը, անբավարար ուշադրություն է նվիրվում ուսումնական պրոցեսի ինտենսիվացմանը, ուսուցման գործնական ուղղվածության ուժեղացմանը, ցածր է տեխնիկական միջոցների օգտագործման արդյունավետությունը, լրիվ չեն օգտագործվում առարկայական կաբինետների հնարավորությունները։ Դեռևս ակտիվ միջոցներ չեն կիրառվում կոմպյուտերային գրագիտության ուսուցումն արագացնելու համար։ Էական թերություններ կան մասնագիտական կողմնորոշման աշխատանքի կազմակերպման մեջ։ Դպրոցական շատ արհեստանոցներ, միջդպրոցական ուսումնաարտադրական կոմբինատներ հանդերձավորված են ֆիզիկապես և բարոյապես հնացած սարքավորումներով, վատ են մատակարարվում աշխատանքային նյութերով, գործիքներով, այլ գույքով։ Դանդաղ է ընդլայնվում միջդպրոցական ուսումնաարտադրական կոմբինատների ցանցը։ Բարելավման կարիք ունի աշխատանքային ուսուցման դասատուների որակական կազմը։



Բավարար չէ հանրապետության մինիստրությունների ու գերատեսչությունների, բազային ձեռնարկությունների մասնակցությունը դպրոցական ռեֆորմի իրագործմանը։

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները պետք է մշտական վերահսկողություն հաստատեն ժողովրդական դեպուտատների քաղաքային և շրջանային սովետների գործկոմների, արտադրական միավորումների և ձեռնարկությունների գործունեության վրա դպրոցի ռեֆորմի իրականացման հարցում։

Տասներկուերորդ հնգամյակում ռեֆորմի գաղափարների ու դրույթների հետևողական կիրառումը ժողովրդական կրթության բնագավառի կենտրոնական խնդիրն է։

Լուսավորության մինիստրությունը, ժողովրդական կրթության մարմինները, գիտահետազոտական ու մեթոդական ստորաբաժանումները, դպրոցների մանկավարժական կոլեկտիվները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները պետք է հետևողականորեն կատարելագործեն կրթության ու դաստիարակության բովանդակությունը, ապահովեն նոր ուսումնական ծրագրերի և դասագրքերի ստեղծումը ուսումնական առարկաների բոլոր ցիկլերի գծով, նկատի ունենալով գիտատեխնիկական նվաճումների և հասարակական զարգացման փորձի առավել լրիվ արտացոլումը։ Պետք է պայմաններ ստեղծել աշակերտների համար՝ տիրապետելու ինֆորմատիկայի և հաշվողական տեխնիկայի հիմունքներին, նրանց ավելի լավ ծանոթացնել արտադրությանը, տեխնոլոգիական պրոցեսներին և ժամանակակից տեխնիկային, ավելացնել աշխատատեղերի թիվը բարձր դասարանցիների համար։

Դպրոցի և արտադրության դաշինքը ժամանակի հրամայական պահանջն է և այն պետք է ամրապնդել կուսակցական, սովետական, տնտեսական ու հասարակական կազմակերպությունների համատեղ ջանքերով։

Լուրջ վրիպումներ կան բանվորական կադրերի պատրաստումը պլանավորելու գործում։ Այն մինչև օրս էլ իրականացվում է առանց հանրապետության ժողովրդական տնտեսության և ռեգիոնների պահանջները մանրակրկիտ ու ռեալ կերպով հաշվի առնելու։ Ցածր է միջնակարգ պրոֆտեխնիկական ուսումնարաններում ուսումը շարունակող 8-ամյա կրթություն ունեցողների տեսակարար կշիռը։ 1985 թվականին այն կազմել է մոտավորապես 20 տոկոս։

Հանրապետության պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության կոմիտեն, ուսումնարանների մանկավարժական կոլեկտիվները, կուսակցական կազմակերպությունները պետք է արագորեն հաղթահարեն ուսումնադաստիարակչական աշխատանքում, երիտասարդների կենցաղի ու հանգստի կազմակերպման գործում եղած լուրջ թերությունները, պայքարեն սովորողների մաղումների դեմ։

Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները, դպրոցների և պրոֆտեխուսումնարանների կոլեկտիվները պետք է ապահովեն դպրոցի դաստիարակչական հնարավորությունների, նրա մանկավարժական ու գաղափարական պոտենցիալի առավելագույն օգտագործումը անհատի համակողմանի ու ներդաշնակ զարգացման, երիտասարդների մեջ մարքս-լենինյան աշխարհայացք, կոմունիստական բարոյականություն, քաղաքացիական բարձր պարտքի զգացում ձևավորելու, բուրժուական գաղափարախոսության ազդեցության, քաղքենիական-սպառողական հոգեբանության ամեն կարգի դրսևորումների դեմ կայուն հակաթույն մշակելու, ուսման, աշխատանքի, հասարակական պարտականությունների նկատմամբ պատասխանատու վերաբերմունք պատվաստելու համար։

Այս գործում պետք է բարձրացվի մանկավարժների անձնական պատասխանատվությունը։

Անհրաժեշտ է անդուլ կերպով հոգալ ուսուցչի դերը, հասարակության մեջ նրա վարկը բարձրացնելու քաղաքական ու մասնագիտական պատրաստության մշտական կատարելագործման պայմաններ ստեղծելու մասին։ Հրամայաբար պահանջվում է ուսուցչական կադրերի պատրաստման բովանդա-

կությունն ու մասշտաբները համապատասխանեցնել ժամանակակից դպրոցի, դպրոցական ռեֆորմի պահանջներին։

Բարելավման կարիք ունեն նաև բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթությամբ մասնագետների պատրաստման պլանավորումը և օգտագործումը։ Այդ գործում առայժմ ոչ լրիվ են հաշվի առնվում ժողովրդական տնտեսության ճյուղերի ռեալ պահանջները, գիտատեխնիկական և սոցիալական առաջընթացի հեռանկարները։ Անհամամասնություններ են ստեղծվել բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ մասնագետների թվական հարաբերակցության մեջ։ Հանրապետությունում ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բարձրագույն կրթությամբ յուրաքանչյուր մասնագետին ընկնում է միջնակարգ մասնագիտական կրթությամբ 0,8 մասնագետ, որը անհրաժեշտ քանակից զգալիորեն պակաս է։ Մի շարք մասնագիտությունների գծով, հիմնականում մանկավարժական և համալսարանական, մասնագետների պատրաստումը գերազանցում է դրանց նկատմամբ եղած պահանջարկը։

Որոշակի մասնագիտությունների գծով ինժեներների թվի ավելացումը չի ամրապնդվել նրանց պատրաստման որակի համապատասխան բարձրացումով։ Տեխնիկական բուհերի շատ շրջանավարտների մոտ ձգձգվում է ժամանակակից արտադրության պայմաններին հարմարվելու շրջանը։ Համալսարանական կրթության մեջ դեռ լիովին չի ապահովված գիտահետազոտական, արտադրական և մանկավարժական գործունեության համար մասնագետների տարբերակված պատրաստումը։

Հանրապետության մի շարք մինիստրություններ ու գերատեսչություններ, արդյունաբերական ձեռնարկություններ հարկ եղած ուշադրություն չեն նվիրում երիտասարդ մասնագետների ռացիոնալ օգտագործմանը, նրանց պահանջմունքներին, միջոցներ չեն ձեռնարկում նրանց աշխատանքի տեղավորելու և նշանակման վայրերում ամրացնելու համար, որը հանգեցնում է կադրերի չարդարացված հոսունության։ Անթույլատրելի է, երբ բարձրագույն կրթությամբ երիտասարդ մասնագետների միջին հաշվով 45 տոկոսը նշանակման վայրը ներկայանալով ըստ բաշխման, ազատվում է երեք տարի էլ չաշխատած։

Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական դպրոցի աշխատողների առջև կարևոր և լուրջ խնդիրներ են ծառացած ուսուցման ու դաստիարակության ամբողջ համակարգը գիտատեխնիկական առաջընթացի արագացման պահանջներին, հասարակության դինամիկ զարգացմանը համապատասխանեցնելու գործում։ Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը (ընկ. Լ. Ղարիբջանյան), բուհերի կուսակցական կազմակերպությունները, ռեկտորատները, տեխնիկումների և ուսումնարանների ղեկավարությունը պարտավոր են վերացնել եղած թերությունները, ապահովել ուսուցման ինտենսիվության և որակի բարձրացումը, հասնել ուսումնադաստիարակչական աշխատանքի արմատական բարելավման։

Եվ, վերջապես, անհրաժեշտ է արմատապես բարելավել մասնագետների որակավորման բարձրացման և վերապատրաստման համակարգի աշխատանքը, կարգավորել և ամրապնդել ուսումնական հաստատությունների ու ֆակուլտետների ցանցը՝ հաշվի առնելով մասնագետների տարբեր կատեգորիաների որակավորման բարձրացման կարիքներն ու առանձնահատկությունները, ստեղծել հատկապես նորագույն տեխնիկայի ու տեխնոլոգիայի գծով վերապատրաստման բավականաչափ ճկուն ձևեր, ամենից առաջ՝ բարձրագույն դպրոցի բազայի վրա։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման նպատակով, մեր բոլոր ջանքերը, ընկերներ, ցանկալի արդյունք չեն տա, եթե մենք մշտապես չմեծացնենք հանրապետության ինտելեկտուալ պոտենցիալը, եթե չունենանք անհրաժեշտ թվով բարձր որակավորման կադրեր՝ թե՛ բանվորական, թե՛ ինժեներական, թե՛ գիտական և այլ կադրեր՝ իրենց գործի լավ մասնագետներ, պրոֆեսիոնալ բարձր պատրաստականության տեր մարդիկ, որոնք կարողանան որոնել ու գտնել, ստեղծել ու ստեղծագործել, կիրառել գտածը, ստեղծածը, նյութականացնել գաղափարը։



Հարկ է նշել հանրապետության սոցիալ-կուլտուրական ոլորտի նյութական բազայի զարգացումն արագացնելու անհրաժեշտությունը։ Մենք պետք է եռանդուն միջոցներ ձեռնարկենք գիտության, կրթության, գաղափարախոսական աշխատանքի, մշակույթի, սպորտի նյութական բազայի ստեղծման ու նորացման մասշտաբների ընդլայնման համար, դա համապատասխանեցնենք արդիական պահանջներին։ Անհրաժեշտ է մինիստրություններին ու գերատեսչություններին, ձեռնարկություններին, կոլտնտեսություններին ու սովխոզներին ավելի ակտիվորեն մասնակից դարձնել դպրոցների, պրոֆտեխուսումնարանների, առողջապահության, մշակույթի ու սպորտի օբյեկտների շինարարությանը, նորոգմանն ու վերակառուցմանը, դրանց հագեցմանը սարքավորումներով, մշակութային ու մարզական գույքով։ Կուսակցական, սովետական մարմիններն այդ հարցերը պետք է պահեն ուշադրության կենտրոնում և ապահովեն ինչպես հիշյալ նպատակներին հատկացված պետական միջոցների արդյունավետ օգտագործումը, այնպես էլ տվյալ ոլորտի առկա նյութական բազայի արդյունավետ օգտագործումը։

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու բարձրագույն իմաստը կուսակցությունը տեսնում է նրանում, նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումում, որ անշեղորեն, քայլ առ քայլ բարձրացվի ժողովրդի բարեկեցությունը, բարելավվեն սովետական մարդկանց կյանքի բոլոր կողմերը, բարենպաստ պայմաններ ստեղծվեն անհատի ներդաշնակ զարգացման համար։ Ընդսմին, անհրաժեշտ է հետևողականորեն կիրառել սոցիալական արդարության ամրապնդման գիծը նյութական ու հոգևոր բարիքների բաշխման գործում, ուժեղացնել սոցիալական գործոնների ազդեցությունը էկոնոմիկայի զարգացման և նրա արդյունավետության բարձրացման վրա։

Այս հիմնադրույթներով, որոնք իրենց շեշտված արտահայտությունն են գտել ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ, պետք է մշտապես առաջնորդվեն մեր բոլոր կուսակցական, սովետական, տնտեսական, հասարակական մարմիններն ու կազմակերպությունները տասներկուերորդ հնգամյակում հանրապետության սոցիալական զարգացման կարևոր և ծավալուն խնդիրները լուծելիս։

## III. ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ, ՔԱՂԴԱՍՏԻԱՐԱԿՉԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ՝ ՆՈՐ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

Ընկերնե՛ր։

Կուսակցության ծրագրային վեհ նպատակների կենսագործումը, սովետական հասարակությունը որակապես նոր վիճակի հասցնելու նրա առաջադրած խոշորամասշտաբ խնդիրների կատարումը հրամայաբար պահանջում են ըստ ամենայնի օգտագործել մարքս-լենինյան գաղափարախոսության վերափոխիչ հզոր ուժը, բարելավել կոմունիստական դաստիարակության գործը, ակտիվացնել մարդկային գործոնը՝ բոլոր վերափոխումների գլխավոր, վճռական գործոնը։

Դաստիարակության գործի, կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի ոճի և մեթոդների կատարելագործման համար հսկայական նշանակություն ունեն ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան ու հոկտեմբերյան պլենումների որոշումները։

Առաջնորդվելով կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հետագա պլենումների և գաղափարախոսական հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի ընդունած որոշումներով, մեր կուսակցական կազմակերպությունը հաշվետու ժամանակաշրջանում հետևողականորեն ձգտել է գաղափարախոսական, քաղդաստիարակչական գործունեության բարելավմանը։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը մշտապես ուշադրության կենտրոնում է պահել գաղափա-

րախոսական աշխատանքի, դաստիարակչական պրոցեսի կոմպլեքսային կազմակերպման և դրա արդյունավետության բարձրացման հարցերը։ Դրանք պարբերաբար քննարկվել են Կենտկոմի պլենումներում, բյուրոյի և քարտուղարության նիստերում, կուսակցական ակտիվի ժողովներում։

Մեր ամբողջ գործունեության բարելավման համար գործողությունների կոնկրետ ծրագիր դարձավ «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։ Իրագործելով կուսակցության արդի պահանջները, վերացնելով թերությունները՝ կուսակցական կազմակերպությունները գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքը ավելի սերտորեն են շաղկապում գործնական խնդիրների լուծման, սոցիալ-տնտեսական ռեալ պրոցեսների հետ, ավելի ակտիվորեն են ուղիներ որոնում դրա արդյունավետության բարձրացման համար։ Այդ աշխատանքում ավելի են մեծացել կոնկրետությունը, նախաձեռնողությունը և հաստատակամությունը։ Շեշտը հատկապես դրվում է անմիջականորեն աշխատավորական կոլեկտիվներում, նրանց սկզբնական օղակներում՝ տեղամասերում ու բրիգադներում, ֆերմաներում ու լաբորատորիաներում, դաստիարակչական գործունեության մակարդակի բարձրացման վրա։

Կատարելագործվել են քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության, դասախոսական պրոպագանդայի համակարգը, քաղաքական աշխատանքի մյուս ձևերը, Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի տեսական ժառանգության, ՍՄԿԿ փաստաթղթերի ուսումնասիրման կազմակերպումը։

Սկսել է ավելի ակտիվորեն գործել քաղաքական ուսուցման ցանցը։ Բարելավվել է աշխատավորների տնտեսագիտական կրթությունը, բարձրացել է միասնական քաղօրերի դաստիարակչական դերը։ Մասսայական-քաղաքական ուսուցման ամբողջ սիստեմում անցում է կատարվել լուսավորականությունից դեպի կոնցեպտուալություն՝ որպես մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, մարդկանց քաղաքական կոփմանն ուղղված աշխատանքի արդյունավետության բարձրացման կարևոր միջոցի։

Բարելավվել է պրոպագանդիստների որակական կազմը, նրանց շարքերում աճել է ղեկավար աշխատողների թիվը։ Ամրապնդվել է կուսակցական պրոպագանդայի նյութատեխնիկական բազան, ստեղծվել է հասարակական հիմունքներով գործող քաղաքական լուսավորության և տնտեսագիտական կրթության ավելի քան 400 կաբինետ։ Հաշվետու ժամանակաշրջանի սկզբին գործարկվեց քաղաքական լուսավորության տան նոր, հարմարավետ շենքը։

Գաղափարախոսական, քաղդաստիարակչական գործունեության բարելավման նպատակով զգալի աշխատանք են կատարում Երևան, Լենինական, Կիրովական քաղաքների, Էջմիածնի, Ախուրյանի, Իջևանի, Հրազդանի և մի շարք այլ քաղաքների ու շրջանների կուսակցական կազմակերպությունները։

Մեր կուսակցական կազմակերպությունում, ընկերներ, ամբողջությամբ վերցված, ուժեղացել է ուշադրությունը քաղդաստիարակչական, գաղափարախոսական աշխատանքի նկատմամբ, կա նաև առաջխաղացում։

Այս ամենն ակտիվորեն նպաստել է հանրապետությունում ստեղծված բարոյաքաղաքական առողջ իրադրության ամրապնդմանն ու խորացմանը, աշխատավորների արտադրական ու հասարակական ակտիվության աճին, տնտեսական ու քաղաքական խնդիրների հաջող կատարմանը։

Դրա հետ մեկտեղ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը գտնում է, որ դեռևս ամեն ինչ չի արվել, որպեսզի գաղափարախոսական աշխատանքը ամենասերտ կերպով կապված լինի կյանքի, մեր հասարակության զարգացման արդի փուլի՝ լուրջ և բեկումնային փուլի, խնդիրների լուծման հետ։

Դանդաղ է իրականացվում ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումի, գիտատեխնիկական առաջընթացի հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմում կայացած խորհրդակցության այն պահանջը, որ գաղափարաքաղաքական դաստիարակությունը պետք է իր բոլոր ձևերով առավելագույնս շաղկապված լինի գլխավոր խնդրի՝ երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնե-



լու հետ։ Հենց սա է այն փոփոխությունների էությունը, որ այսօր անհրաժեշտ է մտցնել գաղափարախոսական աշխատանքի մեջ։

Այնինչ մի շարք շրջանային ու քաղաքային կուսակցական կազմակերպություններում աշխատանքը դանդաղ է վերակառուցվում նոր պահանջների լույսի ներքո, վարվում է հին ձևով, ընդհանուր առմամբ, առանց հարկ եղած կոնկրետության, առանց նպատակամղվելու մեր զարգացումն արագացնելու պրոբլեմների լուծմանը։ Առաջվա պես շատ է խոսվում վերակառուցման անհրաժեշտության մասին, իսկ իրականում այդ վերակառուցումը ակտիվորեն չի իրագործվում, դանդաղ են վերացվում մեր հաշվետվության առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի ընդունած հայտնի որոշման մեջ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումներում նշված թերություններն ու վրիպումները։ Առանձին կուսակցական կազմակերպություններում չեն հրաժարվել շաղակրատանքից, չեն սովորել մարդկանց հետ խոսել ճշմարտության լեզվով, նրանց պարզաբանել բարդ հարցերը։ Դաստիարակչական աշխատանքում շարունակվում են ձևականությունն ու խրատամոլությունը։

Այս առումով հարկ է լուրջ պահանջներ ներկայացնել Ստեփանավանի (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Վ. Բալայան), Ամասիայի (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ի. Բաղիրով), Վարդենիսի (շրջկոմի նախկին քարտուղար՝ ընկ. Կ. Եգանյան), Դիլիջանի (քաղկոմի քարտուղար՝ ընկ. Ռ. Վարդանյան) և այլ շրջանների ու քաղաքների կուսակցական կոմիտեներին ու կազմակերպություններին։

Նոր պահանջների լույսի ներքո իր աշխատանքը ինչպես հարկն է չի վերակառուցել կուսակցության Կալինինոյի շրջկոմը (շրջկոմի նախկին քարտուղար՝ ընկ. Ս. Մեհրաբյան)։ Գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքի ուժեղացման նպատակով կուսշրջկոմի մշակած միջոցառումները ստերեոտիպային են, լրիվ չեն բխում սոցիալ-տնտեսական զարգացման արագացման խնդիրներից, նպատակամղված չեն մարդկանց նախաձեռնության և աշխատանքային ակտիվության բարձրացմանը։ Քաղդաստիարակչական աշխատանքում եղած լուրջ թերությունների պատճառով առանձին աշխատավորական կոլեկտիվներում չի ստեղծվել առողջ, գործարար մթնոլորտ։ Պակասել է պահանջկոտությունը ղեկավարների նկատմամբ։ Արտադրության մեջ դանդաղ են ներդրվում գիտության ու պրակտիկայի նվաճումները, աշխատանքի կազմակերպման ու խթանման նոր ձևերը։ Դրա հետևանքով շրջանը, որը պոտենցիալ մեծ հնարավորություններ ունի, դանդաղ է մեծացնում արտադրության ծավալները, զարգանում է ցածր տեմպերով։

Լուրջ թերացումներից է այն, որ որոշ կուսակցական կոմիտեներ և կազմակերպություններ հետևողականություն հանդես չեն բերում դաստիարակության գործը կատարելագործելու հարցում, կարևորագույն որոշումների կատարմանը կամպանիոն բնույթ են տալիս, մշակված միջոցառումները չեն ամրապնդում կազմակերպչական կոնկրետ աշխատանքով։

Այն, որ մեզ մոտ առկա են ետ մնացող ձեռնարկություններ, կազմակերպություններ, տնտեսություններ, անտնտեսվարության և վատնողականության, վատորակ արտադրանքի թողարկման, անբարեխիղճ աշխատանքի, աշխատաժամանակի կորուստների փաստեր, պետական, արտադրական ու աշխատանքային ցածր կարգապահության և ուրիշ շատ թերություններ, որոնց մասին նշվեց հաշվետու զեկուցման նախորդ բաժնում, վերջին հաշվով կապված են նաև գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության նպատակով կուսակցական կազմակերպությունների կողմից տարվող աշխատանքի ցածր մակարդակի հետ։

Գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքում չի կարելի բավարարվել ձեռք բերված արդյունքներով և թուլացնել ուշադրությունը այդ գործի նկատմամբ։

Փորձը, ընկերներ, մեզ համոզում է, որ երբ կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները բարեհոգություն են դրսևորում, մշտական վերահսկողության տակ չեն պահում աշխատանքի այդ կարևորագույն տեղամասը, թուլացնում են ջանքերն այդ ասպարեզում, բացասական հետևանքներն իրենց երկար սպասել չեն տալիս։ Այդպես պատահեց Երևանի ավտոդողերի գործա-

նիքում ապրելը, թե առաջադիմության ու բարգավաճման ինչ հզոր և գործուն աղբյուր են սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամությունն ու եղբայրությունը, փոխօգնությունը, որոնք բազմապատկում են նրանցից յուրաքանչյուրի, մեր ամբողջ հասարակության ստեղծարար հնարավորությունները։

Սովետական Հայաստանի ժողովուրդը խորապես գիտակցում է, որ ինքը երբեք չէր կարողանա այդքան արագորեն և այդքան հաջողությամբ արմատական սոցիալ-տնտեսական վերափոխումներ իրականացնել, համակողմանի առաջադիմության հասնել իր հողում, չի կարող տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում նոր բարձունքներ նվաճել մեն-մենակ, առանց սովետական եղբայր ժողովուրդների և առաջին հերթին ռուս մեծ ժողովրդի վիթխարի ու բազմակողմանի օգնության։

Մեր ժողովուրդը հարգանքի և երախտագիտության անկեղծ, խոր զգացումներ է տածում սովետների երկրի բոլոր ժողովուրդների հանդեպ՝ եղբայրական անխախտ բարեկամության համար։

Հայ ժողովուրդը հոգեկան ջերմության ու սիրո հատուկ զգացում է տածում իր բարեկամի ու եղբոր՝ ռուս մեծ ժողովրդի հանդեպ, որի աջակցությունն ու անշահախնդիր օգնությունն զգացել է ինչպես իր պատմության դժվարին ժամանակներում, այնպես էլ նոր կյանքի կառուցման ընթացքում։ Հավերժ նվիրվածությունը ռուս ժողովրդի հետ սրբազան բարեկամությանը մեր ժողովրդի ազգային հավատամքն է։

Այսօր կուսակցական համագումարի ամբիոնից մենք մեկ անգամ ևս շեշտում ենք, որ բարեկամությունը ռուս մեծ ժողովրդի, մեր հայրենիքի բոլոր եղբայրական ժողովուրդների հետ եղել է, կա ու միշտ կլինի սրբություն հայ ժողովրդի համար, նրա կյանքի հզոր շարժիչ ուժը, նրա հաջողությունների գրավականը։ Եվ այդ բարեկամության ամրապնդումը Հայաստանի կոմունիստները իրենց կյանքի խորհուրդն ու գերագույն պարտքն են համարում։

Իրագործելով ՍՄԿԿ-ի ծրագրային դրույթները՝ կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները այսուհետև էլ պետք է անդուլ կերպով աշխատեն, որպեսզի յուրաքանչյուր մարդու մեջ սերը Հոկտեմբերի հայրենիքի, այն հողի հանդեպ, որտեղ ինքը ծնվել ու մեծացել է, հպարտությունը աշխարհում առաջին սոցիալիստական պետության պատմական մեծագործությունների համար զուգորդվեն պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հետ, որ նրան հատուկ լինեն ազգամիջյան հաղորդակցման բարձր կուլտուրան, անհանդուրժողությունը նացիոնալիզմի և շովինիզմի, ազգային սահմանափակվածության և ազգային խասիրության դրսևորումների հանդեպ, այն սովորույթների ու բարքերի հանդեպ, որոնք խանգարում են կյանքի ու մարդու կոմունիստական նորացմանը։

Պետք է ուժեղացնել բնակչության աթեիստական դաստիարակությունը բարելավելու, այդ գործում եղած թերությունները վերացնելու, նոր սոցիալիստական ծեսերն ավելի հետևողականորեն արմատավորելու աշխատանքը։ Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ յուրաքանչյուր կուսակցական կոմիտեում և կազմակերպությունում հստակ պատկերացում ունենան կրոնական իրավիճակի մասին և ձեռնարկեն համապատասխան միջոցներ։ Հարկավոր է խիստ ազատվել բարեհոգությունից, պայքար մղել կրոնական նախապաշարումների դեմ, ընդ որում՝ ակտիվորեն օգտագործելով ժողովրդի հակակղերական և աթեիստական ավանդույթները։ Կարևոր է նաև բարձրացնել այդ գործում սովետների աշխատանքի արդյունավետությունը, հարձակողական բնույթ տալ աթեիստական պրոպագանդային։

Նկատի ունենալով միջազգային ասպարեզում երկու աշխարհհայացքների միջև սրվող պայքարը, Արևմուտքի հարաճուն հակասովետական պրոպագանդան, այդ թվում նաև մեր հանրապետության դեմ ուղղված պրոպագանդան՝ կուսակցական կազմակերպությունները ուժեղացրել են սոցիալիզմի նվաճումները պրոպագանդելու, հակառակորդի գաղափարախոսական դիվերսիաները մերկացնելու և դրանց հակահարված հասցնելու աշխատանքը։ Ավելի մեծ



ուշադրություն է նվիրվում հակապրոպագանդայի բնագավառում աշխատող կադրերի պատրաստմանը և նրանց որակավորման բարձրացմանը։

Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ հանրապետությունում անցկացված փնջային սեմինար-խորհրդակցությունը ամփոփեց այդ ասպարեզում կատարված աշխատանքը, մեր կուսակցական կազմակերպություններին զինեց մյուս հանրապետությունների և մարզերի փորձով, նպաստեց հակապրոպագանդիստական գործունեության ակտիվացմանը։

Անհրաժեշտ է այսուհետև էլ կատարելագործել այդ աշխատանքը, ստեղծել հասարակական կարծիքի ուսումնասիրության հստակ համակարգ, տարբերակված աշխատանք տանել մարդկանց հետ ինչպես աշխատավորական կոլեկտիվներում, այնպես էլ ըստ բնակության վայրի, ազատվել հակապրոպագանդիստական աշխատանքի հնացած շտամպներից ու ստերեոտիպներից, բարձրացնել դրա արդյունավետությունը։

Ուժեղացնելով բուրժուական գաղափարախոսության դեմ մեր պայքարի հարձակողականությունը՝ անհրաժեշտ է հմտորեն և ակտիվորեն պրոպագանդել սովետական ապրելակերպը, կոմունիստական կուսակցության և սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականությունը, փաստարկված բացահայտել իմպերիալիզմի հակաժողովրդական, անմարդկային բնույթը, շահագործողական էությունը, նրա կողմից մարդու իրավունքների և ազատությունների ոտնահարումը։

Անհրաժեշտ է այսուհետև էլ ակտիվացնել արտաքին քաղաքական պրոպագանդան և հակապրոպագանդան։ Այդ աշխատանքում մեր համապատասխան մարմինները և կազմակերպությունները պետք է հաշվի առնեն սփյուռքի առկայությունը։ Կարևոր քաղաքական խնդիր է սփյուռքին հասցնել ճշմարտությունը Սովետական Հայաստանի մասին, սովետական ժողովուրդների միասնական ընտանիքում նրա պատմական ձեռքբերումների, նրա իսկական ծաղկման մասին, ճշմարտությունը Սովետական Միության արտաքին քաղաքականության նպատակների, մեր սոցիալիստական հասարակության նվաճումների, կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության մասին, հետևողականորեն մերկացնել դաշնակցության, բոլոր հետադեմ ու պահպանողական ուժերի թշնամական հերյուրանքներն ու բարբաջանքը և վճռական հակահարված տալ դրանց։

Իմպերիալիզմի և առաջին հերթին՝ ամերիկյան առավել սանձազերծ, ռազմատենչ ուժերի ստրկամիտ սպասավորները՝ դաշնակցական պարագլուխները, իրենց հետադիմական, ազգայնամոլ գաղափարախոսությունը, արկածախնդրական, հակասովետական քաղաքականությունը հավատարիմ՝ ջանք չեն խնայում, որպեսզի սեպ խրեն սփյուռքի և մայր հայրենիքի՝ Սովետական Հայաստանի միջև, զրպարտեն նրան, սփյուռքահայերի գիտակցությունը թունավորեն հակակոմունիզմով։

Հայ ժողովրդի պատմական ընտրության իրավացիության հաստատումը կյանքի բովանդակ ընթացքով, մեր հանրապետության համակողմանի առաջադիմությունը, սոցիալիստական հայ ազգի բարգավաճումը հանգիստ չեն տալիս պատմության կողմից մերժված այդ մի բուռ բախտախնդիրներին։

Սփյուռքահայության գերակշիռ մեծամասնությունը Սովետական Հայաստանը համարում է իր հայրենիքը, անկեղծորեն ուրախանում նրա հաջողություններով, խոր համակրանքով վերաբերվում Սովետական Միությանը։ Սփյուռքահայության հետ մշակութային կապի կոմիտեն պետք է ամրապնդի կապերը սփյուռքի առաջադիմական կազմակերպությունների հետ, նրանց օգնի իրագործելու հայրենասիրական ձեռնարկումները, ապահովի անհրաժեշտ նյութերով, որոնք արտացոլեն Սովետական Հայաստանի, սոցիալիզմի նվաճումները, սովետների երկրի պայքարը հանուն խաղաղության և առաջադիմության։

Այս ասպարեզում իր աշխատանքը պետք է է՛լ ավելի կատարելագործի նաև արտասահմանյան երկրների հետ բարեկամության ու մշակութային կապի հայկական ընկերությունը։

Օտարության մեջ գտնվող տասնյակ հազարավոր հայեր երազում են հայ-

կան տնտեսության ինտենսիվացման, գիտատեխնիկական առաջընթացի, ռեսուրսախնայման, աշխատանքի մեթոդների կատարելագործման, կարգուկանոնի, կազմակերպվածության ու կարգապահության վճռական ամրապնդման, պաշտպանողականության, քարացածության, բյուրոկրատական խեղաթյուրումների դեմ մղվող պայքարի հարցերը և այլն։ Նրանց գործունեությունը պետք է ակտիվորեն նպաստի մասսաների կենդանի ստեղծագործության, աշխատավորների, կոլեկտիվների նախաձեռնության լայն ծավալմանը, աշխատանքում ստեղծագործական կողմի ուժեղացմանը, մեր զարգացման արագացման խնդրի լուծման համար, լենինյան խոսքերով ասած, համոզման բավականաչափ լայն ու պատկառելի հիմքի ստեղծմանը։

Մամուլի ներգործունությունը, ինչպես ցույց է տալիս փորձը, զգալիորեն մեծանում է, երբ նրան ակտիվ օգնություն են ցույց տալիս կուսակցական կոմիտեները։ Եվ այս ասպարեզում Կենտկոմը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները պարտավոր են ակտիվացնել իրենց աշխատանքը։ Պետք է խստապահանջ լինել մինիստրությունների, գերատեսչությունների և մյուս կազմակերպությունների այն ղեկավարների նկատմամբ, ովքեր ժամանակին չեն արձագանքում մամուլի քննադատությանը կամ դիմում են խուսագրությունների։

Ընկերնե՛ր։

Մեծ է սովետական գեղարվեստական մշակույթի դերը հասարակության կյանքում, նոր մարդու ձևավորման գործում։ Գեղարվեստական մշակույթը, կուսակցականության ու ժողովրդայնության սկզբունքներին հավատարիմ՝ իր հզոր ազդեցության ամբողջ ուժով ծառայում է կուսակցության և ժողովրդի շահերին, արտահայտում մեր ժամանակակիցների կամքը, զգացումներն ու խոհերը, ակտիվորեն նպաստում նրանց գաղափարաբարոյական և գեղագիտական դաստիարակությանը։

Սովետահայ մշակույթի վարպետների վերջին տարիների ստեղծագործությունները համոզիչ կերպով հավաստում են, որ նրանք ակտիվորեն ձգտում են ապրել կուսակցության հոգսերով, լինել նրա գործուն օգնականը մարդկանց դաստիարակության, կոմունիստական իդեալների, սոցիալիզմի բարոյական արժեքների հաստատման, սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության ու եղբայրության ամրապնդման գործում, վառ կերպով, ամբողջ բազմազանությամբ պատկերել ժողովրդի հոգևոր հարուստ կյանքը, ցույց տալ Հայրենական մեծ պատերազմում նրա անմահ սխրանքի, նրա այսօրվա գործերի ու խիզախումների վեհությունը, բարձրացնել մեր ժամանակի պրոբլեմները։

Հանրապետության մշակութային կյանքում նշանակալի իրադարձություններ եղան Թարգմանչական արվեստի տոնը, Դոնի մշակույթի և վրացական պոեզիայի օրերը, Խաչատուր Աբովյանի, Վլադիմիր Մայակովսկու, Վահան Տերյանի, Արամ Խաչատրյանի, Գալակտիոն Տաբիձեի, Ուզեիր Հաջիբեկովի հոբելյանները, Մոսկվայի, Լենինգրադի, միութենական հանրապետություններ կոլեկտիվների մասնակցությամբ թատերական փառատոնը, «Հողը և մարդիկ», «Սոցիալիզմի նվաճումների պաշտպանության դիրքերում», «Մեր ժամանակակիցը», «Մենք կոմունիզմ ենք կառուցում» գեղարվեստական ցուցահանդեսները, միութենական հանրապետությունների նկարիչների մեզ մոտ կազմակերպված ցուցահանդեսները, մի շարք կինոնկարների, ներկայացումների, երաժշտական երկերի ստեղծումը և այլն։

Հայ գրականության և արվեստի գործիչների մեծ վաստակի բարձր գնահատությունն են սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման շնորհումը ՍՍՀՄ ժողովրդական արտիստուհի Գոհար Գասպարյանին և գրող Սերո Խանզադյանին, ՍՍՀՄ պետական մրցանակի շնորհումը գրող Հրանտ Մաթևոսյանին, հանրապետության մշակույթի մի խումբ գործիչների պարգևատրումը շքանշաններով։

Ստեղծագործական միությունները ավելի ակտիվորեն են աշխատում, որպեսզի գրականության և արվեստի միջոցները, առաջին հերթին հրապարակախոսական ժանրերը դրական ազդեցություն ունենան մարդկանց գործերի



ու կյանքի վրա, լայնորեն պրոպագանդում են սոցիալիստական մշակույթի նվաճումները, ամրապնդում արվեստի և աշխատանքի դաշինքը։

Սակայն ձեռք բերված հաջողությունները չեն կարող սքողել մեր ստեղծագործական միությունների աշխատանքում եղած թերությունները, ստեղծագործական պրոցեսի բացերը։

Մեր գրողները, արվեստի գործիչներն առայժմ քիչ են ստեղծում այնպիսի գործեր, որոնք արդիականության գաղափարափիլիսոփայական իմաստավորմամբ և գեղագիտական հնչողությամբ լինեն մասշտաբային, ճշմարտացիորեն և գեղարվեստական բարձր մակարդակով արտացոլեն սոցիալիստական իրականությունը, ոգեշունչ ու վառ կերպով բացահայտեն նորը, առաջավորը և կրքոտ խարազանեն այն ամենը, ինչը խանգարում է հասարակության առաջընթացին։ Ցածր է առանձին ստեղծագործությունների գաղափարագեղարվեստական մակարդակը, դրանցում օբյեկտիվ չեն պատկերված ինչպես այսօրվա իրականությունը, այնպես էլ պատմական երևույթները։

Ժամանակն ինքը մշակույթի վարպետներից պահանջում է ստեղծագործական լիակատար նվիրում, մեր ժամանակակիցների՝ պատմության իսկական կերտողների, այն մարդկանց խոր կերպարների ստեղծում, ովքեր կատարելագործում են կյանքը և իրենք էլ կատարելագործվում կյանքի բովում, աճում գաղափարապես, բարոյապես, հոգեպես։

Ստեղծագործական միությունները, ընկերությունները (ընկ. ընկ. Վ. Պետրոսյան, Է. Միրզոյան, Ս. Մուրադյան, Կ. Քալանթար, Հ. Ղափլանյան, Է. Ծատուրյան) կուսակցական կազմակերպությունները պետք է գրականության և արվեստի գործիչների ջանքերը ավելի ակտիվորեն նպատակամղեն գեղարվեստական ստեղծագործության կարևորագույն խնդիրների լուծմանը։

Կենտկոմի կուլտուրայի, պրոպագանդայի և ագիտացիայի բաժինները, Հայաստանի կոմկուսի Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղկոմները, մյուս կուսակցական կոմիտեները պետք է ավելի մեծ ուշադրություն դարձնեն արվեստագետ-մտավորականության գաղափարաքաղաքական կոփման հարցերին։

Ստեղծագործական միությունների, նրանց կուսկազմակերպությունների վեհ պարտքն է իրենց արգասաբեր ձեռնարկումներով նպաստել այնպիսի գործերի ստեղծմանը, որոնք արժանի լինեն տեղ գրավելու սովետական բազմազգ մշակույթի խոշորագույն նվաճումների շարքում, հասնել այն բանին, որ մեր գեղարվեստական մշակույթի գաղափարագեղագիտական լիցքը, հուզական-կերպարային ուժը ամբողջովին ծառայեն երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման, ժողովրդի հոգևոր հարստացման, կուսակցության ծրագրային նպատակների իրականացման գործին։

Անհրաժեշտ է հետևողականորեն հասնել թողարկվող ֆիլմերի գաղափարագեղարվեստական մակարդակի բարձրացման, մասշտաբային, իրենց պրոբլեմատիկայով հրատապ պիեսներով թատրոնի խաղացանկի համալրման, համերգային կոլեկտիվների, հեռուստառադիոհաղորդումների գեղարվեստական ծրագրերի բարելավման, զարգացնել մանուկների համար գրական-երաժշտական ստեղծագործությունը, ավելի շատ ստեղծել հայրենասիրական և քաղաքական երգեր։

Գրական-գեղարվեստական քննադատությունը պետք է առավել խորությամբ վերլուծի սովետահայ գրականության և արվեստի զարգացման միտումները, մեծ ուշադրություն նվիրի ժամանակակից ստեղծագործական պրոբլեմներին, ազգային մշակույթների փոխներթափանցման ու փոխհարստացման պրոցեսների ուսումնասիրությանը, խուսափի ազատվի հաճոյախոսությունից, ստեղծագործությունները գնահատելիս ղեկավարվի բարձր չափանիշներով։

Ստեղծագործական միությունների, նրանց կուսակցական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում մշտապես պետք է գտնվեն երիտասարդ արվեստագետների դաստիարակության և պրոֆեսիոնալ աճի հարցերը։ Դա պետական կարևորության գործ է, քանի որ խոսքը վերաբերում է մեր մշակույթի վաղվա օրվան։

Կուլտուրայի մինիստրությունը, պետկինոն, մյուս մարմինները պետք է բարելավեն ստեղծագործական մտավորականության հետ տարվող աշխատանքը, պայմաններ ստեղծեն նրանց արգասավոր գործունեության համար, ընդլայնեն սոցիալական պատվերի պրակտիկան։

Մշակույթի ոլորտը, ընդգծված է կուսակցության ծրագրի նախագծում, կոչված է բավարարելու բնակչության տարբեր կատեգորիաների հարաճուն պահանջմունքները, անհրաժեշտ հնարավորություններ ապահովելու ժողովրդի գեղարվեստական ինքնագործունեության համար, զարգացնելու ընդունակությունները, հարստացնելու սոցիալիստական ապրելակերպը, ձևավորելու առողջ պահանջմունքներ և գեղագիտական բարձր ճաշակ։ Կուսակցությունն այս խնդիրների հաջող լուծման անհրաժեշտ պայման է համարում կուլտուր-լուսավորական աշխատանքի բովանդակության ու մեթոդների մշտական կատարելագործումը, դրա նյութական բազայի ամրապնդումը։

Մենք բոլոր հնարավորություններն ունենք այս խնդիրները հաջողությամբ լուծելու։ Ստեղծված է կուլտուր-լուսավորական և մարզաֆիզկուլտուրային հիմնարկների ճյուղավորված ցանց։ Բայց նրանց գործունեությունը ետ է մնում այսօրվա պահանջներից, զերծ չէ թերություններից։

Կուլտուրայի մինիստրությունը (մինիստր՝ ընկ. Յու. Մելիք-Օհանջանյան) պետք է հետևողականորեն բարելավի աշխատանքի ոճն ու մեթոդները, ավելի կոնկրետ զբաղվի ստեղծագործական կոլեկտիվների, կուլտուր-լուսավորական հիմնարկների գործունեության արդյունավետության բարձրացման հասունացած հարցերով։

Պետք է հասնել ֆիզկուլտուրայի և սպորտի իսկական մասսայականության, ամենօրյա կյանքում դրանց արմատավորման, մարզական ընկերությունների և ստորաբաժանումների աշխատանքի բարելավման։ Սպորտկոմիտեն (նախագահ՝ ընկ. Մ. Նուրիջանյան) պետք է ավելի վճռականորեն վերացնի այդ աշխատանքում տեղ գտած թերությունները, ապահովի մարզական բազաների և կառույցների լրիվ օգտագործումը։ Անհրաժեշտ է հանրապետությունում նոր ստեղծված մարզամշակութային համալիրների աշխատանքի հիմքում դնել բովանդակալից ու հետաքրքիր ձեռնարկումներ։

Ընկերնե՛ր։

Կուսակցության ծրագրի նոր խմբագրության նախագծում նշված է, որ մենք չենք նպատակադրվել սպառողական հասարակություն կառուցել։ Այլ է սովետական մարդկանց կենսական արժույթների սանդղակը, արժույթներ, որոնց հանրագումարը կազմում է սոցիալիստական ապրելակերպի հիմքը, բնութագրում սոցիալիստական հասարակության համակողմանի զարգացած մարդուն։ Դրա համար էլ հենց մենք պայքարում ենք հոգևոր ամայության, իրամոլության հոգեբանության, ընչաքաղցության, պորտաբուծության դեմ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները հետևողականորեն կատարելագործում են մարդկանց բարոյական դաստիարակության աշխատանքը։

Ուժեղացել է պայքարը մեր բարոյականության նորմերից կատարվող շեղումների, հափշտակումների, չարաշահումների, անտնտեսվարության, դրամաշորթության, սպեկուլյացիայի, կաշառակերության, խուլիգանության և այլ բացասական դրսևորումների դեմ։ Որպես դրական երևույթ անհրաժեշտ է նշել անչափահասների շրջանում, ինչպես նաև հարբեցողության պատճառով կատարվող հանցագործությունների կրճատման միտումը։ Որոշ չափով բարձրացել է հանցագործությունների բացահայտումը, ուժեղացվել դրանց կանխարգելումը։

Մեր հանրապետությունում շատ են այնպիսի աշխատավորական կոլեկտիվները, որտեղ կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, ադմինիստրացիաները հմուտ և հետևողական աշխատանք են տանում գաղափարաբարոյական և աշխատանքային դաստիարակության ասպարեզում, որտեղ ստեղծված է բարոյաքաղաքական առողջ մթնոլորտ, մշտապես ամրապնդվում են կարգապահությունը, կազմակերպվածությունն ու կարգուկանոնը, որտեղ կոլեկտիվի անդամները մեծ պատասխանատվության



զգացումով են կատարում իրենց պարտականությունները, աշխատում բարեխղճորեն, բարձրարտադրողաբար, բարձր որակով, իրոք տնտեսատիրոջ պես վերաբերվում ժողովրդական բարիքին, որտեղ ստեղծված է արտադրության մեջ վարքի կանոնների, սոցիալիստական համակեցության նորմերի խախտումների նկատմամբ անհանդուրժողության մթնոլորտ, ակտիվ պայքար է մղվում մեր հասարակությանը խորթ ամեն տեսակ դրսևորումների դեմ։

Այդ հիանալի կոլեկտիվներում են հանրապետության բարոյաքաղաքական առողջ մթնոլորտի ակունքները։

Բայց մեզ մոտ կան նաև խաթարված տեղամասեր, բարոյական դաստիարակության տեսակետից անբարեհաջող սոցիալական բջիջներ։ Առանձին քաղաքներում և շրջաններում դեռևս բարձր է հանցագործությունների մակարդակը։

Բարելավելով բարոյական դաստիարակության աշխատանքը՝ կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները պետք է մշտապես ուժեղացնեն պայքարը բացասական երևույթների դեմ, դրա մեջ ներգրավեն բոլոր աշխատավորական կոլեկտիվներին, զանգվածներին։ Անհրաժեշտ է ըստ ամենայնի ուժեղացնել պայքարը սոցիալիստական սեփականության հափշտակումների, ժողովրդական բարիքի վատնման, ամեն կարգի չարաշահումների, անտնտեսվարության և շռայլողականության դեմ։

Տեղերում կատարված ստուգումները, Կենտկոմում այդ հարցերի քննարկումը կրկին հաստատում են այն անվիճելի ճշմարտությունը, որ հափշտակումները, յուրացումները, զեղծարարությունները կատարվում են այնտեղ, ուր չեն փակված հափշտակումների բոլոր ճանապարհները, պատշաճ կարգուկանոն չի հաստատված նյութական արժեքների և դրամական միջոցների պահպանման ու ծախսման գործում, ուր իսպառ չեն վերացվում նյութական պատասխանատու կադրերի ընտրության գործում եղած թերությունները, ուր անբավարար է տարվում բարոյական դաստիարակության աշխատանքը, ուր անհանդուրժողության մթնոլորտ չի ստեղծվում ժողովրդական բարիքի նկատմամբ ոտնձգության փաստերի շուրջ, սկզբունքային գնահատական չի տրվում այն պաշտոնատար անձանց, ովքեր բացասական երևույթների վերացման գործում թույլ են տալիս անհոգություն և պասսիվություն։

Կուսակցության Կենտկոմը, քաղկոմներն ու շրջկոմները սկսել են ավելի խիստ պատասխան պահանջել դրա համար։ Ենթակա կազմակերպություններում պետական կարգապահության ամրապնդման, ժողովրդական բարիքի պահպանության ապահովման և չարաշահումների կասեցման պատշաճ միջոցներ չձեռնարկելու համար կուսակցական տույժեր են տրվել մի շարք ղեկավար աշխատողների, այդ թվում՝ առևտրի մինիստր ընկ. Ս. Սաֆարյանին, նավթամթերքների մատակարարման պետական կոմիտեի նախկին նախագահ ընկ. Ն. Սորոկինին, սննդարդյունաբերության մինիստրի տեղակալներ ընկ. ընկ. Զ. Ղազումյանին, Ա. Վասիլյանին, նավթամթերքների մատակարարման պետական կոմիտեի նախագահի տեղակալ ընկ. Գ. Ադամյանին։ Աշխատանքում տեղ գտած խոշոր թերությունների, հանրային սեփականության հափշտակողների նկատմամբ ցուցաբերած թողտվության համար կուսակցական պատասխանատվության են ենթարկվել և իրենց գրաված պաշտոններից հանվել Հայկական ՍՍՀ մթերումների մինիստր ընկ. Օ. Հովակիմյանը, մինիստրի առաջին տեղակալ ընկ. Լ. Սահակյանը, «Հայգինարդ» վարչության պետ ընկ. Գ. Զազյանը, գյուղատնտեսության մինիստրության վերահսկիչ-վերստուգիչ վարչության պետ ընկ. Ա. Եղիկյանը։

Խոսելով ժողովրդական բարիքի պահպանության աշխատանքն ուժեղացնելու անհրաժեշտության մասին՝ չի կարելի անտեսել գերատեսչական վերահսկողության ներգործունությունը էականորեն բարձրացնելու, վերահսկիչ-վերստուգիչ ծառայությունները զգալիորեն ակտիվացնելու, նրանց կադրային կազմը ամրապնդելու, այդ ապարատները պատահական, ոչ բանիմաց մարդկանցից զտելու կարևորությունը։

Կենտկոմը հարկ է համարում կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը հատկապես բևեռել կաշառակերության դեմ պայքարն ուժեղաց-

նելու խնդրի վրա։ «Եթե կա այնպիսի մի երևույթ, ինչպիսին կաշառքն է,— ընդգծում էր Վ. Ի. Լենինը,— եթե կաշառքը հնարավոր է, ապա քաղաքականության մասին խոսք չի կարող լինել։ Այստեղ քաղաքականությանը մերձեցում անգամ չկա, այստեղ չի կարելի քաղաքականություն կենսագործել, որովհետև ձեռնարկած բոլոր միջոցները կախված կմնան օդի մեջ և բացարձակապես ոչ մի հետևանքի չեն հասցնի» (ՆԺ, հ. 44, էջ 210)։

Միայն վերջին շրջանում քրեական պատասխանատվության են ենթարկվել և տարբեր ժամկետներով ազատազրկման դատապարտվել Խ. Աբովյանի անվան հայկական մանկավարժական ինստիտուտի պրոռեկտոր Պ. Սահակյանը, այդ նույն ինստիտուտի Գորիսի մասնաճյուղի դիրեկտոր Վ. Բաղդագուլյանը, Երքաղգործկոմի առևտրի վարչության «Տեքստիլկոշիկառի» դիրեկտոր Գ. Մատինյանը, Մասիսի շրջանի Գեղանիստի սովխոզի դիրեկտոր Ա. Ավետիսյանը, Երևանի կաշվի արտադրական միավորման արհմիութենական կոմիտեի նախագահ Շ. Մարտիրոսյանը և մի շարք այլ անձինք։

Հարկավոր է բոլոր միջոցները ձեռնարկել այդ խայտառակ երևույթը մեր կյանքից արմատախիլ անելու համար։

Պետք է մշտապես ուժեղացնել պայքարը նաև հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ, վճռականորեն վերջ դնել այդ կարևոր գործում առանձին տեղերում գոյություն ունեցող բարեհոգությանը։

Կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները պետք է հաստատակամորեն հասնեն այն բանին, որ ամենուրեք ամրապնդվի կարգուկանոնը, արմատախիլ արվեն հափշտակումները, սպեկուլյացիան, պորտաբուծությունը, խուլիգանությունը, մասնավոր սեփականատիրական, սպառողական հոգեբանությունը և ընչաքաղցությունը, ստորաքարշությունը և շողոքորթությունը։ Դրա համար անհրաժեշտ է լիովին օգտագործել ինչպես հասարակական կարծիքի հեղինակությունը, այնպես էլ՝ օրենքի ուժը։ Այստեղ պետք է ավելի մեծ պահանջկոտություն և հետևողականություն հանդես բերեն Կենտկոմի համապատասխան բաժինները։

Բարոյական դաստիարակության գործում, ընկերներ, վիթխարի նշանակություն ունի լավ օրինակը հասարակական և անձնական կյանքում, քաղաքացիական պարտքի կատարման գործում։ Այդպիսի օրինակ առաջին հերթին պետք է ցույց տան կոմունիստները, հատկապես ղեկավարները։ Ցավոք, առանձին ղեկավարների նկատմամբ ցածր պահանջկոտության, նրանց գործողությունների ու վարքի վերահսկողության բացակայության հետևանքով այդ ղեկավարները ոչ միայն լավ օրինակ չեն տալիս, այլև իրենք են գլորվում խախտումների ու չարաշահումների ճահիճը։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը Աբովյանի քաղսովետի գործկոմի նախկին նախագահ Լ. Ավետիսյանին վտարեց կուսակցության շարքերից՝ պետական կարգապահության կոպիտ խախտումների և բնակարաններ բաշխելիս պաշտոնեական դիրքը չարաշահելու համար։ Ջանազան խարդախությունների համար ՍՄԿԿ շարքերից հեռացվել և գրաված պաշտոնից հանվել է «Պոլիվինիլացետատ» գործարանի նախկին դիրեկտոր Ս. Խաչատրյանը, ՍՄԿԿ շարքերից հեռացվել է Երևանի մոդելային կոշիկի ֆաբրիկայի նախկին դիրեկտոր Մ. Փինաջյանը։ Ցավոք, օրինակները կարելի է շարունակել։

Առանձին ղեկավար աշխատողներ երբեմն իրենց ենթականերին հանձնարարում են քննության առնել այնպիսի հարցեր և խնդրանքներ, որոնց լուծումը կապված է օրենքների խախտման հետ։ Իսկ մի՞թե բարոյական դաստիարակությանն օգնում է այն, երբ ղեկավարը կարգապահության և կարգուկանոնի խախտման համար խստապահանջ չէ աշխատողների նկատմամբ, հույս ունենալով, որ ենթականերն էլ իրենց հերթին կներեն իր վրիպումները։ Սրա դեմ անհրաժեշտ է վճռականորեն պայքարել։ Յուրաքանչյուր ղեկավար աշխատող պետք է բարոյական անաղարտության, օրինականության և կարգուկանոնի պահպանման օրինակ ծառայի։ Հակառակ դեպքում նա չի կարող ղեկավար լինել։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմներն ու շրջ-



կոմները պետք է այսուհետև էլ բարձրացնեն պահանջկոտությունն այդ ասպարեզում։

Ակնիվ, բարեխիղճ աշխատանքը պետք է լինի մարդու սոցիալական վարկի գլխավոր չափանիշը։

Կուսակցական կազմակերպությունները պետք է հետևողական աշխատանք տանեն՝ յուրաքանչյուր մարդու մեջ ձևավորելու խոր հարգանք ու պատրաստակամություն ընդհանուր բարօրությանն ուղղված բարեխիղճ աշխատանքի նկատմամբ, հաստատելու կոմունիստական բարոյականություն՝ կոլեկտիվիստական, հումանիստական, ակտիվ և ներգործուն բարոյականություն, որը անհամատեղելի է եսամոլության, եսապաշտության, շահախնդրության հետ, անհանդուրժող մարդու արժանապատվության, հասարակության շահերի նկատմամբ ոտնձգությունների հանդեպ, բարոյականություն, որը դրդում է ակտիվորեն մերժել այն ամենը, ինչը հակասում է սոցիալիստական ապրելակերպին, սոցիալական արդարությանը։

Ընկերնե՛ր։ Սոցիալիստական օրինականության հետևողական ամրապնդումը, իրավախախտումների դեմ մղվող պայքարի ուժեղացումը, աշխատավորների, պետական և հասարակական կազմակերպությունների իրավունքների և օրենքով երաշխավորվող շահերի պաշտպանությունը սերտորեն կապված են իրավապահպան մարմինների գործունեության հետ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության շրջանային և քաղաքային կոմիտեները հաշվետու ժամանակաշրջանում ուշադրության կենտրոնում են պահել այդ մարմինների գործունեության բարելավման, դրանց կադրային ամրապնդման հարցերը։ Տեղաշարժեր, անշուշտ, կան։ Սակայն իրավապահպան մարմինների գործունեությունն առայժմ չի համապատասխանում արդի պահանջներին։ Նրանք դեռևս պատշաճ հաստատակամություն և հետևողականություն չեն ցուցաբերում հանցագործությունների և իրավախախտումների դեմ մղվող պայքարում։ Շատ հանցագործություններ մնում են չբացահայտված, որի հետևանքով յուրաքանչյուր հանցանքի համար պատժի անխուսափելիության ապահովման խնդիրը երբեմն մնում է չլուծված։ Դեռևս թույլ է պայքարը սոցիալիստական սեփականության հափշտակումների, սպեկուլյացիայի, առևտրի կանոնների խախտումների, քաղաքացիների անձնական ունեցվածքի նկատմամբ կատարվող ոտնձգությունների դեմ։

Վարչական մարմինները պետք է գործուն միջոցներ ձեռնարկեն այն անձանց նկատմամբ, ովքեր խուսափում են հանրօգուտ աշխատանքից, ապրում անաշխատ եկամուտներով։ Հարկավոր է սուր կերպով արձագանքել ցածրորակ արտադրանքի թողարկման, պլանների կատարման վերաբերյալ հաշվետվություններում արվող հավելագրումների, աշխատանքային օրենսդրության, բնության պահպանության օրենսդրության խախտումների փաստերին։

Հայկական ՍՍՀ ներքին գործերի մինիստրությունը (ընկ. Հ. Շահինյան), հանրապետության դատախազությունը (ընկ. Ս. Օսիպյան), Հայկական ՍՍՀ արդարադատության մինիստրությունը (ընկ. Ա. Դադայան), Հայկական ՍՍՀ գերագույն դատարանը (ընկ. Ա. Գևորգյան) պետք է գործնական միջոցառումներ իրականացնեն իրավակարգի հետագա ամրապնդման, հանցագործությունների և իրավախախտումների դեմ պայքարի ուժեղացման, օրինակելի հասարակական կարգ հաստատելու աշխատանքում աշխատավորների, լայն հասարակայնության ակտիվ ներգրավման, բացասական դրսևորումների, այն ամենի իսպառ վերացման համար, ինչը խանգարում է մեր առաջընթացին։

Այս մարմինների ղեկավարությունը, կոլեգիաները պետք է ըստ ամենայնի բարելավեն կադրերի ընտրությունը, բարձրացնեն ստորաբաժանումների ղեկավարների պատասխանատվությունը պաշտոնեական պարտքի անբասիր կատարման, ազնվության, կուսակցական սկզբունքայնության, սոցիալիստական օրինականության խստիվ կիրառման ոգով աշխատողների դաստիարակության համար։ Հարկ է այսուհետև էլ վճռականորեն ազատվել անարժան, իրենց վարկաբեկած աշխատողներից։

Կենտկոմի վարչական մարմինների բաժինը, կուսակցական կոմիտեները պարտավոր են մշտապես կատարելագործել իրավապահպան մարմինների

ղեկավարումը, ակտիվորեն ներազդել դրանց աշխատանքի բարելավման վրա, օգնել կուսակցական կազմակերպություններին՝ դաստիարակելու այդ համակարգի աշխատողներին պաշտոնեական պարտքի անբասիր կատարման և օրինականության անշեղ կիրառման ոգով։

Ընկերնե՛ր։

Սոցիալիզմի կատարելագործումը բարդ պրոցես է, որը պահանջում է մասշտաբային և որակապես նոր խնդիրների լուծում ինչպես սոցիալ-տնտեսական, այնպես էլ գաղափարախոսության, հասարակության հոգևոր կյանքի ոլորտներում։

Մեր ամբողջ կուսակցական կազմակերպության, նրա ամեն մի օղակի, ամեն մի կոմունիստի պարտքն է միշտ ուշադրության կենտրոնում պահել մարդկանց գաղափարաքաղաքական և բարոյական դաստիարակության գործը, դրա մեջ անմնացորդ ներդնել կուտակված փորձն ու կարողությունը, հոգու կրակը, մշտապես կատարելագործել դաստիարակության բովանդակությունը, ոճը, ձևերն ու մեթոդները, քանի որ մարդկային գործոնի՝ այսօրվա և գալիք բոլոր փոփոխությունների վճռական գործոնի, նշանակությունը գնալով ավելի ու ավելի է մեծանալու։

## IV. ԸՍՏ ԱՄԵՆԱՅՆԻ ԲԱՐԵԼԱՎԵԼ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ-ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ, ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԱՅԴ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՈՃՆ ՈՒ ՄԵԹՈԴՆԵՐԸ

Ընկերնե՛ր,

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի մշտական հոգատարության առարկան է եղել կազմակերպական-կուսակցական աշխատանքի բարելավումը։ Կենտկոմը հետևողական գործունեություն է ծավալել կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների աշխատանքի ոճի ու մեթոդների կատարելագործման, կուսակցական աշխատանքում, պետական և տնտեսական կառավարման բոլոր ոլորտներում լենինյան ոճի հաստատման, գաղափարախոսական, քաղդաստիարակչական, կազմակերպչական ու տնտեսական գործունեության միասնության ապահովման, մեր կենսագործունեության բոլոր կողմերի վրա կուսակցական ազդեցության ուժեղացման նպատակով։

Հայաստանի կոմկուսը, գործելով ՍՄԿԿ Կենտկոմի ղեկավարությամբ, զգալով նրա ամենօրյա անդուլ ուշադրությունն ու կոնկրետ օգնությունը, հետևողականորեն աշխատել է ՍՄԿԿ XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումների իրականացման համար։ Նա հարստացել է մասսաների մեջ տարվող կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի նոր փորձով, կոփվել գաղափարապես և ամրապնդվել կազմակերպորեն։

Հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի կոմկուսը աճել է կուսակցության 21.899 անդամներով և անդամության թեկնածուներով։ Բարելավվել է կուսակցական կազմակերպության որակական կազմը, բարձրացել կոմունիստների կրթական մակարդակը։ Է՛լ ավելի է ամրապնդվել բանվոր դասակարգի առաջատար դիրքը։ Հաշվետու ժամանակաշրջանում կուսակցական համալրման մեջ բանվորները կազմել են 63,1 տոկոս։ Կուսակցության մեջ ընդունվածների 25 տոկոսը ժողովրդական տնտեսության մասնագետներ են, 35,9-ը՝ կանայք, 74,6-ը՝ կոմերիտականներ։

Ներկայումս Հայաստանի կոմկուսն ունի 5.866 սկզբնական կուսկազմակերպություն, որոնք միավորում են 186.637 կոմունիստների։ Սա վիթխարի ուժ է, ընկերներ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը հետևողական աշխատանք է կատարել սկզբնական կուսակցական կազմակերպությունների գործունեության բարելավման համար՝ գիտակցելով, որ դրա հետ են անխզելիորեն կապված թե



կոմունիստների ակտիվության բարձրացումը և թե հանրապետական կուսակցական կազմակերպության հաջող գործունեությունը։ Միջոցառումներ են իրականացվել կուսակցական օղակների կառուցվածքը բարելավելու, արտադրության կառավարման և աշխատանքի կազմակերպման նոր ձևերին դրանք համապատասխանեցնելու համար։ Ստեղծվել են արտադրամիավորումների կուսկազմակերպությունների քարտուղարների խորհուրդներ։ Յուրաքանչյուր յոթերորդ բրիգադում գործում են կուսխմբեր, յուրաքանչյուր երրորդում հաստատված է կուսկազմակերպիչ։ Բարելավվել է սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարների որակական կազմը։

Մեզանում, ընկերներ, շատ են մարտունակ, նպատակասլաց ու լավ աշխատող կուսակցական կազմակերպությունները, որոնք, լինելով աշխատավորական կոլեկտիվների քաղաքական միջուկը, կուսակցության քաղաքականությունը հմտորեն շաղկապում են մասսաների կենդանի ստեղծագործության հետ, նրանց ջանքերը մոբիլիզացնում տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների լուծման համար։ Այստեղ են մեր հաջողությունների ակունքները։ Բայց քիչ չեն նաև ոչ մարտունակ, թույլ աշխատող սկզբնական կուսկազմակերպությունները, որոնք նախաձեռնություն և հաստատակամություն հանդես չեն բերում կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների լուծման գործում, հարկ եղածին պես չեն զբաղվում կոմունիստների գաղափարաբարոյական դաստիարակությամբ, նրանց ակտիվության բարձրացմամբ, ավանգարդային դերի ապահովմամբ։ Այստեղ են թաքնված մեր շատ թերությունների, բացթողումների և թերացումների պատճառները։

Այսօր, երբ կուսակցությունը գլխավորում է երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման համաժողովրդական շարժումը, պահանջվում է, ինչպես սահմանեց ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը, որպեսզի մոտակա ու հեռանկարային նպատակների իրագործման պայքարի ելնի յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն, յուրաքանչյուր կոմունիստ, որպեսզի ավելի լիովին բացահայտվեն նրանց ստեղծագործական հնարավորությունները։

Սկզբնական կուսակցական կազմակերպությունների գործերն ու հոգսերը պետք է մշտապես գտնվեն կուսակցության շրջկոմների, քաղկոմների, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ուշադրության կենտրոնում։ Կուսակցական կոմիտեները պետք է հաստատակամորեն շարունակեն սկզբնական կուսակցական կազմակերպություններին ամենօրյա և առարկայական օգնություն ցույց տալու, նրանց աշխատանքը բարելավելու գիծը։ Պետք է սկզբնական կուսկազմակերպությունների ջանքերը նպատակամղել կոլեկտիվների առջև ծառացած տնտեսական և քաղաքական խնդիրների կատարմանը, գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը, դաստիարակչական աշխատանքի բարելավմանը, այն բանին, որ նրանք ակտիվորեն զբաղվեն կոլեկտիվների սոցիալական զարգացման հարցերով, մշտապես կատարելագործեն մասսաների մեջ տարվող կազմակերպչական-քաղաքական աշխատանքը։

Կենտկոմի բաժինները, քաղկոմներն ու շրջկոմները պետք է է՛լ ավելի ամրապնդեն կապերը սկզբնական կուսկազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների հետ, ստույգ իմանան գործերի իրական վիճակը տեղերում, կադրերին ճանաչեն ոչ թե ըստ անկետային տվյալների, այլ անձամբ, մշտապես շփվեն նրանց հետ արտադրության մեջ, ուսումնասիրեն աշխատանքի պրոցեսում։

Դա կուսակցական կոմիտեներին հնարավորություն կտա ավելի օբյեկտիվորեն գնահատել կուսկազմակերպությունների աշխատանքը, լավատեղյակ լինել նրանց ուժեղ և թույլ կողմերին, ժամանակին ուղղել սխալները, օգնել վերացնելու թերություններն ու վրիպումները, ավելի հաջող լուծելու առաջադրված խնդիրները, կենսագործելու կուսակցության քաղաքական հիմնադրույթները, նրա ստրատեգիական գիծը։

Կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների խնդիրն է ուժեղացնել պահանջկոտությունը կուսակցության յուրաքանչյուր անդամի նկատմամբ՝ նրա կողմից իր հասարակական պարտքի, կուսակցական որոշումների կատարման, կուսակցականի ազնիվ և անաղարտ նկարագրի համար։ Կոմու-

նիստը, շեշտվեց ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումում, գնահատվում է ըստ իր արարքների և իր գործերի։ Ուրիշ չափանիշներ չկան և չեն կարող լինել։ Յուրաքանչյուր կոմունիստ պետք է լինի կուսակցության քաղաքականության ակտիվ կենսագործող, օրինակ ծառայի աշխատանքով և վարքով, հասարակական և անձնական կյանքում։

Հարկավոր է ըստ ամենայնի բարձրացնել յուրաքանչյուր կոմունիստի ակտիվությունը, հասնել ռեալ անձնական պատասխանատվության, խորացնել նրա կողմից նոր իրադրության ըմբռնումը, խթանել արդիական մոտեցումները մեր զարգացման պրոբլեմների լուծման նկատմամբ, ամրապնդել ինքնաքննադատության և գործարարության ոգին, պայքարել պասիվության և անտարբերության, հետամնացության և քարացածության դեմ, ամրապնդել կուսակցական կարգապահությունը, ընդլայնել իրենց ընկերների առջև կոմունիստների հաշվետվությունները լսելու պրակտիկան։

Կուսակցական կազմակերպությունները պետք է ըստ ամենայնի բարելավեն ՍՄԿԿ-ի մեջ ընդունվողների ընտրության գործը, կոմունիստներին հաստատակամորեն դաստիարակեն կանոնադրական պահանջների խստիվ կատարման ոգով, իրենց շարքերը մաքրեն անարժան մարդկանցից։

Ընկերնե՛ր։

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ կադրերի ճիշտ ընտրությունն ու կատարման ստուգումն են աշխատանքի «մեխը», կուսակցական ղեկավարման էությունը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը իր կադրային աշխատանքում մշտապես ղեկավարվել է կուսակցության կադրային քաղաքականության հիմնարար սկզբունքներով, կուսակցության համագումարների և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների, կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության գործի բարելավման հարցերի վերաբերյալ նրա որոշումներով։

Հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումներում երկու անգամ քննարկվել են կադրային աշխատանքի, կադրերի գործունեության ոճի ու մեթոդների կատարելագործման հարցերը կուսակցության պահանջների լույսի ներքո։

Կենտկոմը վարել է կուսակցության կադրային քաղաքականությունը անշեղորեն կենսագործելու կուրս, որը բացառում է ամեն կարգի սուբյեկտիվիստական դրսևորումները կադրերի ընտրության ու տեղաբաշխման հարցում, երիտասարդ ու փորձառու աշխատողների համատեղման, կադրերի նախաձեռնության ու կարգապահության, պատասխանատվության և ինքնուրույնության բարձրացման, ձեռք բերված վերջնական արդյունքների հիման վրա նրանց գործունեության բազմակողմանի, կշռադատված և օբյեկտիվ գնահատման կուրս։ Կադրերի նկատմամբ հարգանքը, վստահությունը զուգակցվել է բարձր պահանջկոտության հետ։ Հատուկ ուշադրություն է նվիրվել կադրերի գաղափարաքաղաքական կոփմանը, բարոյական դաստիարակությանը, նրանց մեջ նախաձեռնողության, գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցման զարգացմանը։

Հետևողական աշխատանք է տարվել արտադրության և կառավարման բոլոր օղակները քաղաքականապես հասուն, խորագիտակ, գործիմաց, եռանդուն, բարոյական բարձր հատկանիշներով օժտված կադրերով ամրապնդելու նպատակով։ Գործնական միջոցներ են ձեռնարկվել կադրային պոտենցիալի կատարելագործման և ավելի լավ օգտագործման համար, ժողովրդական տնտեսության մասնագետներին, կանանց ու երիտասարդներին, հանրապետությունում բնակվող ազգերի և ազգությունների ներկայացուցիչներին ղեկավար կուսակցական, սովետական, կուլտուր-տնտեսական աշխատանքի առաջ քաշելու համար։

Այսօր մենք բոլոր հիմքերն ունենք ասելու, որ հանրապետության առաջընթացը, տնտեսական ու սոցիալական զարգացման ասպարեզում նրա ձեռք բերած կայուն հաջողությունները, նրա լիարյուն հասարակական-քաղաքական, մշակութային կյանքը բոլոր աստիճանների մեր կադրերի, այն մարդկանց անձնվեր աշխատանքի և ստեղծագործության արգասիքն են, ովքեր իրենց բոլոր գիտելիքները, փորձը, իրենց ամբողջ եռանդը նվիրաբերում են



կուսակցության քաղաքականության, նրա ստեղծարար պլանների իրականացմանը։

Միաժամանակ պետք է ասել, որ կադրային աշխատանքում դեռևս գոյություն ունեն շատ թերություններ ու բացեր։ Այդ աշխատանքը հետագա բարելավման և կատարելագործման կարիք ունի, մանավանդ եթե այն դիտենք ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի որոշումների լույսի ներքո։

Դեռևս, ընկերներ, թույլ են տրվում աշխատողների առաջքաշման փաստեր, առանց լիովին հաշվի առնելու նրանց գործնական, քաղաքական և բարոյական հատկանիշները։ Դա անխուսափելիորեն հանգեցնում է աշխատանքի վատացման և, վերջին հաշվով՝ ձախողման, իսկ կադրերի գործունեության, վարքի պատշաճ վերահսկողության բացակայության պարագայում՝ նրանց վերասերման։

Գործնական, քաղաքական և բարոյական հատկանիշները լրիվ չէին հաշվի առնվել ժողովրդական դեպուտատների Մասիսի շրջանային սովետի գործկոմի նախկին նախագահ Շ. Ղազարյանին ղեկավար աշխատանքի առաջ քաշելիս։ Իսկ նրա գործունեության վերահսկողության, աշխատանքում թույլ տված թերությունների և սխալների սկզբունքային քննադատության բացակայությունը հանգեցրեց վերասերման։ Չունենալով անհրաժեշտ արժանիքներ՝ նա ընդունակ չեղավ կատարելու շրջգործկոմի նախագահի պարտականությունները, թույլ էր տալիս տարբեր կարգի խախտումներ և, բնականաբար, ազատվեց այդ պաշտոնից։ Աշխատելով որպես Սպիտակի շաքարի գործարանի դիրեկտոր՝ նա գլորվեց հանցագործությունների ճահիճը, մերկացվեց կաշառակերության մեջ և քրեական պատասխանատվության ենթարկվեց։

Աշխատանքը ձախողեցին, վերասերվեցին, հանցագործությունների և տարբեր կարգի մեքենայությունների մեջ խճճվեցին Երևանի ծխախոտի փորձարարական գործարանի նախկին դիրեկտոր Մ. Գարոյանը, Երհացառի նախկին դիրեկտոր Թ. Հարությունյանը, Աշտարակի շրջանի Օշականի սովխոզի նախկին դիրեկտոր Ռ. Գալստյանը, որոնք վտարվել են կուսակցության շարքերից և քրեական պատասխանատվության ենթարկվել։

Այս փաստերից պետք է լուրջ հետևություններ անեն ինչպես կուսակցության համապատասխան շրջկոմները, քաղկոմները, մինիստրությունների ու գերատեսչությունների սկզբնական կուսկազմակերպությունները, ղեկավարներն ու կոլեգիաները, այնպես էլ Կենտկոմի բաժինները։

Կադրեր ընտրելիս չպետք է թույլ տալ անսկզբունքայնության դրսևորումներ, այդ կարևոր գործում մակերեսային մոտեցում։ Կուսակցության Կենտկոմը, քաղաքային, շրջանային կոմիտեները պետք է ավելի խստապահանջ լինեն նրանց նկատմամբ, ովքեր երաշխավորում և հաստատում են ղեկավար կադրերին։ Կադրերի սխալ նշանակման յուրաքանչյուր փաստ պետք է ստանա ամենասկզբունքային և ամենախիստ կուսակցական գնահատական։

Կադրերի ճիշտ ընտրության հուսալի երաշխիքը, որ բացառում է պատահականություններն ու սխալները, առաջքաշման գործում ռեզերվի առկայությունն է աշխատանքի բոլոր ուղղություններում։ Անցած ժամանակաշրջանում այս տեսակետից քիչ գործ չի արվել։ Այնուհանդերձ, կադրերի գործում ռեզերվի ձևավորումը տակավին նեղ տեղ է մնում շատ կուսակցական կոմիտեների համար։ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնին անհրաժեշտ է ուժեղացնել հսկողությունն այդ գործում։

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները պետք է ըստ ամենայնի բարելավեն կադրերի ռեզերվի ընտրության գործը, նրանց ակտիվորեն զինեն կուսակցական-քաղաքական ղեկավարման և պետական կառավարման ժամանակակից մեթոդներով, նրանց պատվաստեն կազմակերպչական աշխատանքի հմտություններ։

Պետք է հաստատակամորեն իրականացնել նաև ղեկավար կադրերի պատրաստման ու վերապատրաստման, նրանց քաղաքական ու մասնագիտական գիտելիքների մակարդակի բարձրացման աշխատանքը։

Ըստ ամենայնի բարելավելով մեր կադրերի որակական կազմը, հոգալով

նրանց պրոֆեսիոնալ աճի, քաղաքական կոփման մասին՝ մենք պետք է նրանց մշտապես դաստիարակենք կուսակցական ու պետական կարգապահության խստագույն պահպանման, հանձնարարված գործի համար բարձր պատասխանատվության ոգով, մշտապես հետևելով, թե նրանք ինչպես են կատարում իրենց ուղղակի պարտականությունները, ինչպիսին է նրանց վարքը կենցաղում, արդյոք ետ չե՞ն մնում նրանք իրենց զարգացմամբ, գործարար հեղինակություն վայելո՞ւմ են իրենց կոլեկտիվում։

Ոչ մի կուսակցական կազմակերպություն, ոչ մի աշխատող չի կարող վերահսկողությունից դուրս մնալ։ Անհրաժեշտ է ըստ ամենայնի բարձրացնել պահանջկոտությունը նրանց նկատմամբ։ Պահանջկոտության ամեն մի թուլացում հանգեցնում է կարգուկանոնի խախտման, կադրերի անկազմակերպվածության, պարտականությունների վատ կատարման, պետական, պլանային և արտադրական կարգապահության խախտումների։

Պրակտիկան ցույց է տալիս, որ ցածր պահանջկոտությունը, որպես կանոն, ի վերջո հանգեցնում է կադրերի կորստյան։ Հենց ցածր պահանջկոտությունն է պատճառը, որ ղեկավար շատ աշխատողներ ոչ միայն ժամանակին չեն ուղղել թույլ տված սխալները, չեն վերացրել աշխատանքում եղած թերությունները, այլև, ընդհակառակն, խորացրել են դրանք, ինչը հանգեցրել է կուսակցական պատասխանատվության ենթարկելուն և զբաղեցրած պաշտոններից նրանց ազատելուն։ Այսպես եղավ Հայկական ՍՍՀ Հրատպետկոմի նախկին նախագահ Ս. Բաղդասարյանի, գլխինտուրիստի նախկին պետ Ա. Խաչիկյանի, հանրապետության սպորտկոմիտեի նախկին նախագահ Ռ. Ասատրյանի, մի շարք այլ ղեկավար աշխատողների հետ։

Պահանջկոտությունը պետք է դիտվի որպես կադրերի դաստիարակման մշտական գործոն։ Այստեղ շատ անելիքներ ունեն կուսակցական կոմիտեները և սկզբնական կուսկազմակերպությունները, որոնք պետք է այս գործում մշտապես ցուցաբերեն բարձր սկզբունքայնություն և հետևողականություն։ Նրանք պետք է հասնեն այն բանին, որ ամեն ոք աշխատի լիակատար նվիրումով և բարեխղճորեն կատարի իր ուղղակի պարտականությունները։ Պետք է բարձրացնել պահանջկոտությունը յուրաքանչյուրի նկատմամբ, անկախ նրա զբաղեցրած պաշտոնից։ Անպատասխանատվության և անկազմակերպվածության ամեն մի փաստ, հատկապես եթե թույլ է տալիս կոմունիստ ղեկավարը, պետք է ստանա սկզբունքային, կուսակցական գնահատական, և մեղավորը խստորեն պատժվի։

Կարգուկանոնի և կարգապահության ամրապնդման հարցերը հատկապես հրատապ են այսօր։

Հարկավոր է ուղղակի ասել, որ մեզանում ամենուրեք չէ, որ պատշաճ ուշադրություն են նվիրում այս հույժ կարևոր հարցին։ Մեր գործերում մենք վճռական բեկման չենք հասնի, եթե նույնքան վճռական պայքար չմղենք մեր կենսագործունեության բոլոր բնագավառներում՝ արտադրության մեջ և սպասարկման ոլորտում, հասարակական կյանքում, կենցաղում, աշխատանքային յուրաքանչյուր կոլեկտիվում, յուրաքանչյուր քաղաքում ու գյուղում կազմակերպվածությունը, կարգուկանոնը և կարգապահությունը ամրապնդելու համար։

Ոչ մի ներողամտություն չպետք է ցուցաբերվի նրանց նկատմամբ, ովքեր չեն արդարացնում վստահությունը, խախտում են կարգապահությունն ու կարգուկանոնը, թույլ են տալիս անվայել արարքներ, վնաս հասցնում մեր ընդհանուր գործին։ Այստեղ պետք է խստորեն ու սկզբունքային գործեն կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները՝ ուժեղացնելով պահանջկոտությունը բոլորի և առաջին հերթին ղեկավարների նկատմամբ։

Անհրաժեշտ է, որ կոմունիստ ղեկավարների արարքները, որպես կանոն, քննության առնվեն և գնահատվեն անմիջականորեն սկզբնական կուսակցական կազմակերպությունների կողմից։ Դա կնպաստի կազմակերպությունների մարտունակության, նրանց առջև ղեկավարների պատասխանատվության բարձրացմանը, կունենա դաստիարակչական մեծ նշանակություն։ Իսկ մեզանում դեռևս շատ են սկզբնական կուսկազմակերպությունները շրջանցելու



փաստերը։ Պետք է ընդլայնել աշխատավորական կոլեկտիվների, կուսակցական կազմակերպությունների ժողովներում, նրանց բյուրոների ու կոմիտեների նիստերում ղեկավար աշխատողների հաշվետվությունները լսելու պրակտիկան։

Այս ամենի իրականացման գործում պետք է լրիվ օգտագործել աշխատավորական կոլեկտիվների մասին ՍՍՀՄ օրենքի ընձեռած հնարավորությունները։

Կուսակցության շրջկոմները, քաղկոմները, Կենտկոմը պետք է լրիվին բացառեն իրեն չարդարացրած, գործը ձախողած աշխատողներին մեկ այլ ղեկավար աշխատանքի տեղափոխելու արատավոր պրակտիկան։ Այսուհետև էլ ամենուրեք պետք է վճռականորեն ազատվել բյուրոկրատներից ու պաշտոնամոլներից, խստագույնս պատժել շահամոլներին, զանազան գործամոլներին ու խարդախներին։

Կուսակցական, սովետական, տնտեսական և այլ ղեկավար աշխատանքների պետք է առաջ քաշել նրանց, ում հատուկ են բարձր գաղափարայնությունը, նվիրվածությունը կուսակցության գաղափարներին ու գործին, ինտերնացիոնալիզմն ու սովետական հայրենասիրությունը, կուսակցության քաղաքականության խոր ըմբռնումը, այն պրակտիկայում կենսագործելու կարողությունը, նրանց, ում բնորոշ են խորագիտակությունը, բարձր կարգապահությունը, անձնվիրությունն ու ազնվությունը, բարեխղճությունն ու աշխատասիրությունը, համեստությունն ու պարզությունը, արդարամտությունը, պահանջկոտությունն ու բարձր կուլտուրան, ուշադրությունը մարդկանց նկատմամբ, բարձրագույն պատասխանատվությունը հանձնարարված գործի համար։ Այդպիսի ղեկավար աշխատողները, անտարակույս, և՛ հեղինակություն կվայելեն, և՛ կկարողանան հաջողությամբ ու լիովին կատարել առաջադրվող խնդիրները։

Կադրեր ընտրելիս, տեղաբաշխելիս և դաստիարակելիս պետք է միշտ հիշել լենինյան այն ցուցումը, որ ղեկավարի հատկանիշը որոշվում է «ոչ թե իշխանության ուժով, այլ հեղինակության ուժով, եռանդի, ավելի մեծ փորձառության, ավելի մեծ բազմակողմանիության, ավելի մեծ տաղանդավորության ուժով» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 7, էջ 17)։

Կուսակցական կոմիտեները պետք է կադրերի կայունության, նրանց ամրացման գործը հմտորեն զուգորդեն կադրերի նորացման հետ, հոգան այն մասին, որ փորձառու կադրերի հետ միասին աշխատեն, փորձ ձեռք բերեն, անհրաժեշտ կոփում ստանան երիտասարդ աշխատողները։ Այս բնական պրոցեսը, որը հուսալիորեն ապահովագրում է լճացածությունից, քարացածությունից ու վոլյունտարիզմից, չպետք է խախտվի և ոչ մի մակարդակում։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության շրջկոմներն ու քաղկոմները ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումից հետո ակտիվացրել են աշխատանքն այդ բնագավառում, իրականացրել կադրային կազմի երիտասարդացման մի շարք միջոցառումներ։ Բարելավվել է երիտասարդ կադրերի, հատկապես կանանց ղեկավար աշխատանքի առաջքաշման գործը։ Այս գիծը պետք է այսուհետև էլ վարել վճռականորեն և հետևողականորեն։

Այսօր, համագումարի ամբիոնից, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի անունից թույլ տվեք սրտագին շնորհակալություն հայտնել այն բոլոր ընկերներին, ովքեր կուսակցության հանձնարարությամբ երկար տարիներ ղեկավար կուսակցական, սովետական, տնտեսական և այլ հասարակական-քաղաքական աշխատանք են կատարել և անցել են վաստակած հանգստի։ Նրանց փորձն ու գիտելիքները համապատասխան ձևով օգտագործելը, անտարակույս, օգուտ կտա գործին։

Խոսելով կադրային կազմի օպտիմալ նորացման անհրաժեշտության մասին, միաժամանակ անհրաժեշտ է հատուկ ուշադրություն հրավիրել հետևյալ պարագայի վրա։ Երբեմն լինում է այսպես. մարդը մեկ տարի էլ չի աշխատել, նրա մոտ ինչ-որ բան չի ստացվում՝ անմիջապես վերցնում-տեղափոխում են այլ աշխատանքի։ Չի կարելի, ընկերներ, այս կարևոր գործում ցուցաբերել հապճեպություն, աշխատել՝ փորձելու-սխալվելու պարզունակ մեթոդով։

ռուցել նոր պահանջների համեմատ։ Որոշ տեղերում շարունակում են գոյատևել աշխատանքի սխալ ոճը, հաջողություններով արբենալը, ինքնահանգստացումը, բացակայում են իրատեսությունը, արվածի քննադատական վերլուծությունն ու գնահատումը, ձեռք բերածով չգոհանալու առողջ անբավարարվածությունը։

Կենտկոմը սկզբունքային գնահատական է տվել նման երևույթներին, խիստ քննադատության ենթարկել թերությունները, կադրերին օգնել շտկելու գործերը, կատարելագործելու իրենց աշխատանքի ոճն ու մեթոդները։ Իսկ նրանց, ովքեր համապատասխան հետևություններ չեն արել, չեն վերակառուցվել, շարունակել են աշխատել հին ձևով, ցածր արդյունավետությամբ, քննադատաբար չեն վերաբերվել արվածին, չեն ազատվել ձեռք բերված արդյունքների գերագնահատման հակումից, Կենտկոմը ենթարկել է կուսակցական պատասխանատվության, ազատել զբաղեցրած պաշտոններից։

Մեր նախորդ համագումարում քննադատվեց կուսակցության Արագածի և Ապարանի շրջկոմների աշխատանքը։ Միաժամանակ, նրանց ցույց տրվեց անհրաժեշտ օգնություն։ Սակայն այդ կուսշրջկոմների նախկին առաջին քարտուղարներ ընկ. ընկ. Թ. Մելքոնյանը և Բ. Անդրեասյանը անհրաժեշտ հետևություններ չարեցին, չկարողացան շտկել գործերի վիճակը։ Նրանք ազատվեցին առաջին քարտուղարի պարտականություններից։ Իսկ որ գործերի բարելավման, հանրային արտադրության, հատկապես անասնապահության զարգացման արագ տեմպեր ապահովելու համար այդ շրջաններում ռեզերվներ և հնարավորություններ կային, վկայում են շրջկոմների ղեկավարության փոփոխումից հետո հիշյալ շրջանների աշխատավորների ձեռք բերած ցուցանիշները։

Վերջին ժամանակներս թուլացել էր կազմակերպչական և քաղաքական աշխատանքը Թումանյանի կուսակցական կազմակերպությունում։ Կուսշրջկոմի նախկին առաջին քարտուղար ընկ. Ս. Սիմոնյանը ինքնաքննադատաբար չէր գնահատում ձեռք բերված արդյունքները, հանդես էր բերում ինքնագոհություն, ինքնահանգստացում։ Թուլացել էր պահանջկոտությունը։ Մի շարք դեպքերում առանձին ղեկավարների թերությունների ու զանցանքների սկզբունքային կուսակցական գնահատականը նենգափոխվում էր լիբերալ հանդիմանությամբ։ Բնական է, որ դա հանգեցրել էր կուսակցական ու պետական կարգապահության իջեցման, հող ստեղծել բացասական երևույթների համար, ինչը առաջ էր բերում կոմունիստների, աշխատավորների վրդովմունքը։ Այս և այլ թերությունների հետևանքով շրջանն իր ունեցած հնարավորություններից բացահայտորեն ցածր արդյունքների էր հասնում։ Հենց ինքը՝ ընկ. Ս. Սիմոնյանն էլ կենցաղում հանդես բերած անհամեստության համար Կենտկոմի կողմից ենթարկվեց կուսակցական պատասխանատվության։

Շրջանի գործերի վիճակը անքննադատաբար էին գնահատում, աշխատանքի ոճն ու մեթոդները ժամանակին չկարողացան վերակառուցել Կամոյի, Կալինինոյի, Սևանի, Թալինի շրջկոմների նախկին առաջին քարտուղարներ ընկ. ընկ. Դ. Հարությունյանը, Ս. Մեհրաբյանը, Ս. Զաքարյանը, Պ. Խաչատրրյանը։

Կրասնոսելսկի կուսշրջկոմի ղեկավարությունը նույնպես քննադատաբար չէր մոտենում գործերի վիճակի գնահատմանը, հանդես էր բերում ինքնահանգստացում։ Կուսակցության շրջկոմը թույլ էր վերահսկում, չէր ապահովում վերադաս մարմինների և սեփական որոշումների կատարումը, լուրջ թերություններ էր թույլ տալիս կադրային աշխատանքում։ Շրջկոմը, շրջգործկոմը ակտիվորեն չէին զբաղվում կադրերի աշխատանքի ոճի ու մեթոդների վերակառուցմամբ, նրանց չէին նպատակամղում հասնելու տնտեսությունների հնարավորություններին համապատասխանող արդյունքների։

Լսելով կուսշրջկոմի հաշվետվությունը՝ Կենտկոմը սկզբունքային գնահատական տվեց հիշյալ թերություններին, կուսակցական տույժերի ենթարկեց շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Նազինյանին և շրջգործկոմի նախագահ ընկ. Մ. Ալիևին։ Պետք է ասել, որ քննադատությունը ճիշտ ընկալվեց։ Գործերի վիճակը սկսել է շտկվել։



ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի պահանջների լույսի ներքո իրենց աշխատանքի ոճն ու մեթոդները պետք է լրջորեն վերակառուցեն կուսակցության Ստեփանավանի (քարտուղար՝ ընկ. Վ. Բալայան), Անիի (քարտուղար՝ ընկ. Ս. Նազարյան), Ամասիայի (քարտուղար՝ ընկ. Ի. Բաղիրով) և այլ կուսշրջկոմներ։

Աշխատանքի լենինյան ոճի հաստատման պարտադիր պայմանը եղել և մնում է կատարման սիստեմատիկ, գործուն վերահսկողությունն ու ստուգումը։ Ահա թե ինչու Կենտկոմը կարևոր նշանակություն է տվել և տալիս է ընդունված որոշումների կատարմանը, սկսված գործը մինչև վերջ հասցնելուն։

Հանրապետության կուսակցական շատ կոմիտեներում ու կազմակերպություններում կիրառվում են վերադաս մարմինների և սեփական որոշումների կատարման վերահսկողության և կազմակերպման արդյունավետ ձևեր և մեթոդներ, ամրապնդվել է կատարողական կարգապահությունը։ Դրա հետ մեկտեղ կուսակցության մի շարք շրջանային ու քաղաքային կոմիտեներ իրենց գործնական աշխատանքում պատշաճ ուշադրություն չեն նվիրում որոշումների կատարման վերահսկմանն ու կազմակերպմանը։

Շամշադինի կուսշրջկոմը (քարտուղար՝ ընկ. Ե. Եղիազարյան) հրապուրվում է մեծաթիվ որոշումներ ընդունելով՝ ի վնաս կենդանի կազմակերպչական աշխատանքի։ Կուսշրջկոմի ուժերը հիմնականում կենտրոնացվում են հարցեր նախապատրաստելու, տեղեկանքներ ու նախագծեր կազմելու վրա։ Սակավ չեն դեպքերը, երբ նույն հարցերի առթիվ կրկնակի որոշումներ են ընդունվում։ Ընդ որում, խիստ հաշիվ չի պահանջվում նրանցից, ովքեր չեն կատարել նախորդ որոշումները։

Հոկտեմբերյանը խաղողի արտադրության խոշորագույն շրջաններից մեկն է հանրապետությունում։ Կուսշրջկոմը շատ որոշումներ է ընդունել խաղողի արտադրության ծավալները մեծացնելու, այգիները վերակառուցելու մասին։ Սակայն գործը դրանից այն կողմ չի գնացել։ Շրջանը հնգամյակի տարիներին սիստեմատիկաբար չի կատարել խաղողի արտադրության, ինչպես նաև այգիների վերակառուցման և նորերի ստեղծման պլանները, որի համար բազմիցս խիստ քննադատության է ենթարկվել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումներում և ակտիվի ժողովներում։ Ինչպես ցույց է տվել ստուգումը, Հոկտեմբերյանի կուսշրջկոմը այս բոլոր տարիներին լրջորեն չի անհանգստացել խաղողի արտադրության բնագավառում այդքան խիստ ետ մնալու համար։ Շրջկոմի որոշումները չկատարելու, պետական պլանները ձախողելու համար ոչ ոք կուսակցական պատասխանատվության չի ենթարկվել։ Հարկ է նշել, որ հանրապետական մարմինները ևս ժամանակին համապատասխան միջոցներ չեն ձեռնարկել։

Պետք է բարձրացնել թե՛ ընդունվող որոշումների որակը և թե պատասխանատվությունը դրանց կատարման համար։ Պետք է որոշումներ ընդունել հիմնական հարցերի, աշխատանքի գլխավոր ուղղությունների վերաբերյալ։ Ընդ որում՝ ընդունել հիմնավոր, կոնկրետ որոշումներ, որոնք հստակորեն նշեն կատարման համար պատասխանատու անձանց և կազմակերպությունների խնդիրները։ Դրանք պետք է կուսակցական կազմակերպություններին, աշխատավորական կոլեկտիվներին նպատակամղեն կոնկրետ խնդիրների լուծման։ Անհրաժեշտ է վճռականորեն ազատվել այն վնասակար պրակտիկայից, երբ առանձին կուսակցական կոմիտեներ որոշում ընդունելուց հետո գործն ավարտված են համարում, մոռանալով, որ դրան հաջորդում է ավելի պատասխանատու փուլը՝ որոշման իրականացման, նրա կատարումը վերահսկելու փուլը։

Ինչպես վերադաս մարմինների, այնպես էլ սեփական որոշումների կատարման գործը անբավարար հիմքերի վրա է դրված հանրապետության մի շարք մինիստրություններում, գերատեսչություններում ու կազմակերպություններում։ Այսպես, նախկին գյուղշին մինիստրությունը, «Հայգլխջրշինը», «Հայջրնախագիծ», «Հայգյուղնախագիծ» ինստիտուտները չէին ապահովում Բաղրամյանի շրջանի տնտեսական ու սոցիալական զարգացման հարցերի վերաբերյալ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների

խորհրդի ընդունած որոշման լրիվ կատարումը։ Կենտկոմի բյուրոն դրա համար ընկերներ Գ. Թադևոսյանին, Մ. Գևորգյանին ի ցույց դրեց։ Անթույլատրելի է, որ վերոհիշյալ հիմնարկների կուսակցական կազմակերպությունները փաստորեն չեն իրականացրել ապարատի աշխատանքի վերահսկման իրենց ֆունկցիան, իրենց պատասխանատու չեն համարել այդքան կարևոր որոշման կատարման համար, ղեկավար աշխատողներից հաշիվ չեն պահանջել հանձնարարությունների կատարման ժամկետները վիժեցնելու համար։

Ընդունված որոշումների կատարումը կազմակերպելու և վերահսկելու կարողությունը ղեկավարի գործարար, կազմակերպչական և քաղաքական ընդունակությունների ստույգ չափանիշն է։ Կենտկոմը գտնում է, որ այս գործում պետք է բարձրացվի յուրաքանչյուր մարմնի, հիմնարկ-ձեռնարկության ոչ միայն առաջին դեմքի, այլև կոլեգիաների, ղեկավարների տեղակալների, բոլոր համապատասխան ծառայությունների պատասխանատվությունը։ Նրանք պետք է ակտիվորեն ներգրավվեն որոշման թե՛ կատարման և թե վերահսկման գործում։

Հայկական ՍՍՀ տեղական արդյունաբերության մինիստրությունում (մինիստր՝ ընկ. Մ. Զուրաբյան) կատարման վերահսկման ու ստուգման վիճակի և այդ աշխատանքին մինիստրության ղեկավար կադրերի անձնական մասնակցության հարցի՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմում տեղի ունեցած քննարկումը ցույց տվեց, որ այդ գործում կան լուրջ թերություններ, որ մինիստրության ղեկավարները և կուսակցական կազմակերպությունը հարկ եղած հետևությունները չեն արել կատարման վերահսկումն ու կազմակերպումը կատարելագործելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի պահանջներից, մինչև չէ, որ նախատեսված միջոցառումները ամրապնդում են անհրաժեշտ կազմակերպչական աշխատանքով։

Պետք է վճռականորեն փոխել վիճակը։ Որոշումն ընդունվել է, ուրեմն պետք է կատարվի լրիվ և ժամանակին։ Դրա կատարման վերահսկողությունը ևս պետք է լինի մշտական։ Որոշման կատարումը չապահովող, ժամկետների վիժեցում թույլ տվող աշխատողը պետք է համապատասխան պատիժ կրի։ Այլապես, մենք բեկման չենք հասնի մեր գործունեության մեջ։ Իրենց հերթին ՀԿԿ Կենտկոմի բյուրոն, քարտուղարությունը, բաժինները, հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է այսուհետև ավելի մեծ պահանջկոտություն և հետևողականություն ցուցաբերեն այս գործում։

Պետք է լավ կոորդինացնել և ուժեղացնել կատարման վերահսկողությունը, բարձրացնել հատկապես այդ նպատակով ստեղծված վերահսկիչ մարմինների ու ծառայությունների դերը։

Միաժամանակ անհրաժեշտ է առաջնորդվել Կենտկոմի ապրիլյան պլենումի այն ցուցումով, որ «ստուգել պետք է, վերահսկել անհրաժեշտ է, և ամեն մի ստուգում պիտի գործնական օգուտ տա, գործի շահերին ծառայի։ Բայց հավիվ թե արդարացված են միևնույն, երբեմն փոքր հարցի կապակցությամբ ստուգումները, մեծաթիվ հանձնաժողովները, որոնք կազմվում են ձևական նկատառումներով, մարդկանց կտրելով աշխատանքից, ստեղծելով նյարդայնության մթնոլորտ»։

Կուսակցական կոմիտեները պետք է հասնեն գործարարության և օպերատիվության, թղթահոսքի կրճատման, աշխատանքի կաբինետային ոճի հաղթահարման, բազմաթիվ նիստեր ու խորհրդակցություններ հրավիրելու սովորույթի վերացման։ Անհրաժեշտ է, որ նրանք հետևեն, թե ինչ ուշադրություն է դարձվում հասարակական կարծիքին, քաղաքացիների քննադատական դիտողություններին, դիմումներին ու նամակներին, թե դրանք գործնականում ինչպես են իրականացվում աշխատավորական կոլեկտիվներում, սովետական, տնտեսական և մյուս մարմինների, բոլոր նրանց կողմից, ում հասցեագրված են։

Միանգամայն բնական է, որ այս ամենում օրինակ պետք է ծառայեն իրենք՝ կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները։

Հարկավոր է, ընկերներ, հասնել կուսակցական կոմիտեների՝ որպես քաղաքական ղեկավարման մարմինների, դերի մշտական բարձրացման, թույլ



չտալ, որ նրանք փոխարինեն պետական ու հասարակական մարմիններին, զուգահեռաբար կատարեն նրանց ֆունկցիաները։

Չէ՞ որ գաղտնիք չէ, որ առանձին դեպքերում նրանք իրենց վրա են վերցնում այն աշխատանքի մի զգալի մասը, որով պետք է զբաղվեն այլ կազմակերպություններ։

Վերցնենք, օրինակ, տեղական սովետները։ Մեծ չափով նրանցից է կախված սոցիալական հարցերի, այն ամենի լուծումը, ինչը կապված է մարդու սպասարկման, նրա տրամադրության, նրա ամենօրյա կենցաղի հետ։ Սակայն շատ վայրերում սովետական մարմինները պատսպարվում են կուսակցական մարմինների թիկունքում, լիովին չեն իրագործում իրենց լիազորությունները։ Այս քննադատությունը կարելի է ուղղակի հասցեագրել Նոյեմբերյանի (շրջգործկոմի նախկին նախագահ՝ ընկ. Հ. Թորոսյան), Ամասիայի (շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Մ. Հակոբյան), Կալինինոյի (շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Կ. Ղազարյան), Ղուկասյանի (շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Լ. Հովհաննիսյան), Սևանի (շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Գ. Պողոսյան) և մի շարք այլ շրջանների ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմներին։

Անհրաժեշտ ենք համարում կրկին շեշտել կուսակցության այն պահանջը, որ յուրաքանչյուր՝ թե՛ սովետական, թե՛ արհմիութենական, թե՛ կոմերիտական և թե տնտեսական կազմակերպություն պետք է զբաղվի հենց իր գործով, լիովին կատարի այն ֆունկցիաները, որ նրա վրա դրված են օրենքով և իր կանոնադրությամբ։ Միայն այս պայմանով մենք կկարողանանք հասնել հաջողության, բարձրացնել նրանց աշխատանքի արդյունավետությունը։

Հարկավոր է հասնել ընտրովի մարմինների ապարատների աշխատանքի ոճի մշտական կատարելագործման։ Փոխվում է ընտրովի մարմինների, հատկապես սովետների կազմը, իսկ ապարատը երբեմն շարունակում է աշխատել ստերեոտիպով, իր նախկին ռիթմով, նախկին ոճով, փաստաթղթերը պատրաստում է նախկին դիրքերից, ինչը, բնականաբար, չի համապատասխանում ժամանակի ոգուն։ Անհրաժեշտ է պարբերաբար հանրագումարի բերել ապարատի գործունեության արդյունքները, պարզել, թե նրա աշխատանքում ինչն է հնացել, և ազատվել ոչ պիտանի աշխատողներից։

Պետք է բարելավել նաև կուսակցական ապարատի կոմպլեկտավորման գործը։ Պատասխանատու աշխատանքի պետք է ընդունել այն երիտասարդներին, որոնք անպայման կյանքի դպրոց են անցել աշխատանքային կոլեկտիվներում, արտադրության մեջ, օժտված են նորի սուր զգացողությամբ, ակտիվորեն մասնակցում են հասարակական-քաղաքական աշխատանքին։ Հարկավոր է վճռականորեն պայքարել ապարատի կադրերի լճացածության դեմ, նրանց ժամանակին ուղարկել իրենց հնարավորություններին և հակումներին համապատասխանող կոնկրետ աշխատանքի։

Մեր ղեկավար կադրերի ոճին պետք է բնորոշ լինի մշտական շփումը աշխատավորների հետ։ Մինչդեռ նրանցից ոմանց հենց դա է, որ պակասում է։ Իսկ առանձին աշխատողների էլ պակասում է մարդկանց մինչև վերջ լսելու համբերությունը, նրանք տառապում են իրավիճակի, գործի էության մեջ չխորանալու, աջ ու ձախ խրատներ կարդալու, շարունակ ցուցումներ տալու հիվանդությամբ։ Պետք է արմատախիլ անել ձևամոլության ու անտարբերության դրսևորումները, բյուրոկրատական և մյուս խեղաթյուրումները կառավարման ապարատի աշխատանքում։

Ժամանակը պահանջում է ամենուրեք հաստատել աշխատանքի լենինյան ոճը՝ գործարար, իրատեսական, որը ենթադրում է գիտական մոտեցում հասարակական պրոցեսներին, մերժում է ամեն քարացածություն, պահպանողականություն, լճացածություն, չի հանդուրժում բյուրոկրատիզմի, ձևամոլության, կազմակերպամոլության, հանդիսամոլության ու շաղակրատանքի, սնապարծության ու անպատասխանատվության որևէ դրսևորում, ներհակ է ամեն տիպի անկազմակերպվածության ու անկարգապահության։

Նպատակասլացություն և նորի զգացում, աշխատանքում կոնկրետություն, կազմակերպվածություն, ինքնակարգապահություն, հաստատակամություն, առաջադիմության մշտական ձգտում, նորովի մտածելու ունակություն, հա-

մարձակ վճիռներ կայացնելու և եռանդագին գործելու, ստեղծագործելու, թերությունները ոչ թե բացատրելու, այլ կոնկրետ աշխատանքով հաստատակամորեն վերացնելու, առաջ ընթանալու, անպայման ավելի շատ արդյունքի հասնելու կարողություն՝ ահա թե ինչպիսին պետք է լինի այսօր աշխատանքի ոճը, որն ապահովի ժամանակի գլխավոր լոզունգի իրագործումը՝ տեմպեր և գիտատեխնիկական առաջընթաց, խոսքի և գործի միասնություն, ստեղծագործություն և նախաձեռնություն, կարգապահություն և պահանջկոտություն, կազմակերպվածություն և կարգուկանոն։

Ընկերնե՛ր։ Հաշվետու ժամանակաշրջանում Կենտկոմը մշտական ուշադրություն է նվիրել սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության զարգացմանը։ ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումից հետո կուսակցական կոմիտեներն ու կազմակերպություններն ավելի հետևողական աշխատանք են տարել քննադատության և ինքնաքննադատության ծավալման համար։

Անցած հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում նախկինի համեմատությամբ ավելի սրությամբ հնչեց կոնկրետ քննադատությունը կուսակցական, սովետական, տնտեսական վերադաս մարմինների հասցեին։ Մի շարք կուսակցական կոմիտեներ կուտակել են քննադատական դիտողությունները հաշվի առնելու և իրականացնելու լավ փորձ։ Կենտկոմի բյուրոն և քարտուղարությունը պարբերաբար լսում են հաշվետվություններ՝ քննադատական դիտողությունների իրականացման առնչությամբ կուսակցական կոմիտեների, մինիստրությունների, գերատեսչությունների և այլ կազմակերպությունների կատարած աշխատանքի վերաբերյալ։

Սակայն դեռևս չի հաջողվել ամենուրեք գործն այնպես կազմակերպել, որ քննադատությունն ու ինքնաքննադատությունը լինեն գործուն, որ քննադատական դիտողությունները լիովին հաշվի առնվեն, որ անհրաժեշտ միջոցներ ձեռնարկվեն թերությունների վերացման համար։

Մի շարք կուսակցական կազմակերպություններում քննադատությունը և ինքնաքննադատությունը չեն զարգանում ինչպես պահանջում է կուսակցությունը, ձևական բնույթ են կրում։ Քննադատական խոսքը երբեմն հնչում է անհասցե, կոկված, արտահայտվում որպես ցանկություն կամ խնդրանք։ Առանձին տեղերում քննադատության պատրանք է ստեղծվում։ Լիովին արմատախիլ չեն արված նաև քննադատության ճնշման զանազան ձևերով դրսևորվող փաստերը։

Քննադատության և ինքնաքննադատության զարգացման մեջ մեծ նշանակություն ունի ղեկավար աշխատողների և մարմինների դիրքորոշումը, այն, թե նրանք ինչ պայմաններ, մթնոլորտ են ստեղծում ազատ քննադատության համար, թե ինչպես են կատարում քննադատական դիտողություններն ու առաջարկությունները, որքանով ինքնաքննադատ են հենց իրենք։

Կուսակցական ժողովներում, պլենումներում, ինչպես նաև հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում կոմունիստները բազմիցս կոնկրետ քննադատական դիտողություններ են անում առևտրի, ավտոտրանսպորտի, կենցաղային սպասարկման, առողջապահության մինիստրությունների, Հայկոոպի, ավտոտեխսպասարկման գլխավոր վարչության հասցեին՝ նրանց ենթակա ձեռնարկությունների ու կազմակերպությունների աշխատանքում առկա լուրջ թերությունների, սպասարկման ոլորտում տեղ գտած բացասական երևույթների համար։ Սակայն դրանց ղեկավարները՝ ընկ. ընկ. Ս. Սաֆարյանը, Խ. Դրամփյանը, Ս. Թումանյանը, Է. Գաբրիելյանը, Ռ. Գրիգորյանը, Ա. Մագոյանը սպառիչ միջոցներ չեն ձեռնարկում դրությունը շտկելու համար։

Դրանով են բացատրվում նաև պետկինոյի (նախագահ՝ ընկ. Ռ. Սամսոնով), կուլտուրայի մինիստրության (նախկին մինիստր՝ ընկ. Գ. Առաքելյան) համակարգի աշխատանքում այսօր էլ գոյություն ունեցող շատ թերություններ։

Իրենց գործունեության արդյունքների նկատմամբ քննադատական վերաբերմունքի ոգով կադրերի դաստիարակմանը արդյոք կարո՞ղ էին նպաստել Աբովյանի կուսշրջկոմի նախկին առաջին քարտուղար՝ ընկ. Գ. Բարիկյանի անքննադատ վերաբերմունքն իր աշխատանքի թերությունների նկատմամբ, քննադատության անտեսումը նրա կողմից, պարադայնության հակումը։



Իսկ մեզանում որքա՜ն փաստեր կան, երբ առանձին տեղական սովետների ղեկավարներ ականջ չեն դնում քննադատությանը և ժամանակին չեն լուծում աշխատավորության, բնակչության բարձրացրած հարցերը։

Կենտկոմը, կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները պետք է է՛լ ավելի բարձրացնեն պահանջկոտությունը, ղեկավարներից ավելի խիստ հաշիվ պահանջեն քննադատության նկատմամբ անտարբերության և քննադատական դիտողությունների կատարման գործում անպատասխանատվության ամեն մի դրսևորման համար։

Մեր խնդիրն է այսուհետև էլ զարգացնել սկզբունքային, ճշմարտացի, կոնկրետ, կոնստրուկտիվ, սուբյեկտիվիզմից զերծ քննադատությունն ու ինքնաքննադատությունը բոլոր կուսակցական կազմակերպություններում, աշխատավորական կոլեկտիվներում, արտադրության ու կառավարման բոլոր օղակներում, ղեկավարության բոլոր մակարդակներում։ Ամենուրեք պետք է ստեղծվեն այնպիսի պայմաններ և մթնոլորտ, որոնք նպաստեն բացահայտ, աներկյուղ քննադատությանը, կարծիքների ազատ արտահայտմանը։ Պետք է մեր կադրերին, հատկապես ղեկավար կադրերին դաստիարակել արդարացի քննադատության նկատմամբ հանդուրժողության, հարգանքի ոգով, որքան էլ այդ քննադատությունը դուրեկան չլինի, սովորեցնել հաշվի առնել աշխատանքային ընկերների կարծիքը, ձեռնարկել ամենագործուն միջոցներ շտկելու համար այն ամենը, ինչը քննադատվում է, դատապարտվում։

Անհրաժեշտ է հետևողականորեն բարձրացնել նաև ինքնաքննադատության կուլտուրան, որը ընդհանուր ոչինչ չունի ինքնախարազանման հետ, հասնել այն բանին, որ ինքնաքննադատությունը լինի առարկայական, հիմնվի աշխատողի, հատկապես ղեկավարի կողմից աշխատանքում թույլ տրված թերացումները, վրիպումները, սխալները, իրոք, լիովին գիտակցելու վրա և ոչ թե պաթետիկ խոստովանության՝ թե «ես, ընկերներ, նույնպես, ինչպես հարկն է չեմ աշխատել», «մեզանում, ընկերներ, դեռևս շատ են թերությունները» և այլն։

Հարկավոր է ակնդետ հետևել, որ ժամանակին և վճռականորեն կանխվեն ու անհրաժեշտ հակահարված ստանան նաև քննադատամոլության ռեցիդիվները, դեմագոգիկ, զրպարտչական հարձակումները ազնիվ, պահանջկոտ աշխատողների վրա։ Դա առավել ևս կարևոր է հիմա, երբ իրականացվում է ամենուրեք կարգուկանոն, կազմակերպվածություն, կարգապահություն հաստատելու, անկազմակերպվածության ու անպատասխանատվության դեմ պայքարն ուժեղացնելու կուսակցության պահանջը։

Հարկ է հատկապես ուշադրություն հրավիրել մեր կյանքից այնպիսի խայտառակ երևույթներն արմատախիլ անելու անհրաժեշտության վրա, ինչպիսիք են անստորագիր նամակները, ազնիվ մարդկանց, կադրերին անվանարկելու փորձերը։ Գլխավորն այստեղ պետք է լինի դաստիարակչական աշխատանքի ուժեղացումը, հստակ կարգուկանոնի հաստատումը յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում, յուրաքանչյուր գյուղում ու քաղաքում։

Դրա հետ մեկտեղ անանուն նամակագիրները և զրպարտիչները չպետք է անպատիժ մնան։ Հարկավոր է նրանց բացահայտել և պատասխանատվության ենթարկել օրենքով սահմանված կարգով։

Մեր դիրքորոշումը, ընկերներ, պարզ է և հստակ, ակտիվ և նախաձեռնող. բարեխիղճ և ազնիվ աշխատողները, իրենց գործունեության արդյունքները քննադատաբար գնահատող կադրերը պետք է միշտ պաշտպանված լինեն և կպաշտպանվեն զանազան չարախոսների, քննադատամոլ և դեմագոգ տարրերի վարկաբեկիչ հարձակումներից։

Կուսակցական կոմիտեները, ինչպես պահանջում է ՍՄԿԿ Կենտկոմը, պետք է յուրաքանչյուր կուսկազմակերպությունում ստեղծեն այնպիսի մթնոլորտ, որը լիովին բացառի գործունեության արդյունքների և գործերի վիճակի ոչ օբյեկտիվ գնահատումը, ինքնագովաբանումն ու շքամոլությունը, լայն ասպարեզ բացի քննադատության և ինքնաքննադատության, հատկապես ներքևից եկող քննադատության առջև։ Հենց այդպիսի մթնոլորտում միայն կարելի է խուսափել սխալներից աշխատանքում։

Ընկերնե՛ր։ Համագումարին նախորդած հաշվետու-ընտրական կամպանիան հանրապետության կուսակցական կազմակերպությունում անցավ կազմակերպական ու քաղաքական բարձր մակարդակով, կոմունիստների ակտիվության պայմաններում։

Հաշվետու-ընտրական կամպանիան ցույց տվեց, թե ինչպես է բարձրացել հանրապետության կուսակցական կազմակերպության, ամբողջ հասարակական կյանքի տոնուսը ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից հետո, թե նրա որոշումները ինչպիսի բարերար ազդեցություն են գործել կուսակցության կյանքի բոլոր կողմերի վրա։ Հաշվետու-ընտրական կամպանիան ցույց տվեց, որ հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները, ինչպես սովետական բոլոր մարդիկ, լիովին հավանություն են տալիս կուսակցության քաղաքականությանը, պաշտպանում երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման տեմպերի արագացման նրա կուրսը, մեծ շահագրգռությամբ են ձեռնամուխ լինում այն նոր խնդիրների լուծմանը, որ կուսակցությունը մեր հասարակության առջև դնում է արդի փուլում։

Կուսակցական ժողովներում և կոնֆերանսներում ելույթ է ունեցել ավելի քան 60 հազար կոմունիստ։ Խստապահանջ վերլուծության հիման վրա գնահատվել է արվածը, քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտում, շիտակ գործարար կերպով քննարկվել են կոլեկտիվների կյանքի ցավոտ հարցերը, բացահայտվել թերությունները ու վրիպումները, ի հայտ բերվել արտադրության աճի, էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման, գործերի բարելավման, աշխատանքն արգելակող խոչընդոտների վերացման հնարավորություններն ու կոնկրետ ուղիները։

Կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների, Կենտկոմի բաժինների, քարտուղարության ու բյուրոյի պարտքն է ուշադրությունից դուրս չթողնել և ոչ մի օգտակար առաջարկություն ու քննադատական դիտողություն, ամենագործուն միջոցները ձեռնարկել դրանց իրագործման համար։ Անհրաժեշտ է նաև մանրազնին ընդհանրացնել հաշվետու ժամանակաշրջանում կուսակցական կազմակերպությունների կուտակած դրական փորձը, այն բոլոր նորը, ինչ նրանց աշխատանքում հայտնվել է ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումից հետո, այն ամեն արժեքավորը, ինչ մեզ տվեց հանրապետության կոմունիստների նախահամագումարյան կոլեկտիվ խորհուրդը, և դա ակտիվորեն օգտագործել մեր ապագա աշխատանքում։

Արդի փուլում մեր կյանքի բոլոր կողմերը շոշափող բարդ ու մասշտաբային խնդիրները կարելի է լուծել ժողովրդի կենդանի ստեղծագործության, նրա բանականության, տաղանդի և աշխատանքի վրա հենվելով միայն։ Ուստի և կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները պետք է այդ խնդիրների կատարմանը մոբիլիզացնեն բոլոր աշխատավորներին, մշտապես զարգացնեն բանվոր դասակարգի, գյուղացիության ու մտավորականության նախաձեռնությունն ու եռանդը, այդ նպատակով լիովին օգտագործեն կուսակցության ծրագրային փաստաթղթերի տեսական ու քաղաքական հսկայական պոտենցիալը, գործողության մեջ դնեն մեր բոլոր ստեղծարար հնարավորությունները, ավելի ակտիվորեն զորավիգ լինեն օգտակար նախաձեռնություններին։

Ընկեր պատգամավորներ, ձեզ ներկայացվեցին հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի գործունեության արդյունքները։ Կուտակված փորձի, ձեռքբերումների, եղած թերությունների ու վրիպումների քննադատական վերլուծության հիման վրա հաշվետու զեկուցման մեջ արտահայտված են նաև Կենտկոմի մի շարք նկատառումները հանրապետության կուսակցական կազմակերպության, նրա կոմիտեների ու սկզբնական օղակների գաղափարախոսական, քաղաքական և կազմակերպչական գործունեության հետագա կատարելագործման ուղիների, աշխատանքի ոճն ու մեթոդները մեր զարգացման ներկա փուլին համապատասխանեցնելու խնդիրների մասին։

Կենտկոմը վստահ է, որ համագումարի պատգամավորներն ակտիվորեն, համակողմանի ու շահագրգիռ, գործարար կերպով կքննարկեն հաշվետվությունը, սկզբունքային քննադատության կենթարկեն մեր աշխատանքի թերությունները ու վրիպումները, կոնկրետ առաջարկություններ կանեն հանրապետական կուսակցական կազմակերպության ամբողջ գործունեությունը կուսակցության նոր պահանջների լույսի ներքո է՛լ ավելի բարելավելու համար։

Դա հնարավորություն կընձեռի օբյեկտիվորեն գնահատելու արվածը, հարստացնելու մեր կոլեկտիվ փորձը, կօգնի ավելի լավ իմանալու աշխատանքի թերություններն ու թույլ կողմերը, հստակորեն սահմանելու դրանց վերացման ուղիները։ Մենք կոլեկտիվ մտքով կմշակենք հանրապետության առջև ծառացած տնտեսական ու քաղաքական խնդիրների հաջող իրագործման, մեր երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման, նրա նյութական ու հոգևոր հարստությունների բազմապատկման մեջ Սովետական Հայաստանի ավանդի մեծացման գործողությունների կոնկրետ ծրագիրը։

Մենք վստահ ենք, որ համագումարի պատգամավորները, արտահայտելով իրենց կուսակցական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների կամքն ու ցանկությունը, ակտիվորեն կքննարկեն ու լիովին կպաշտպանեն նախահամագումարյան փաստաթղթերը՝ կուսակցության ծրագրի նոր խմբագրության, ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների, մեր երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղությունների նախագծերը։

Ընկերնե՛ր։

Հինգ տարի է անցել Հայաստանի կոմկուսի XXVII համագումարից։ Դրանք լարված աշխատանքի, միասնական սովետական ընտանիքում մեր հանրապետության հետագա համակողմանի առաջընթացի տարիներ էին։ Մենք շատ բան սովորեցինք, հարստացանք փորձով։ Մենք իրավամբ հպարտանում ենք մեր նվաճումներով, պարզորոշ տեսնում թերություններն ու վրիպումները։ Մենք գիտենք, որ մեզ սպասում են մեծ գործեր՝ նորարարական, մասշտաբային, դժվարին գործեր։ Մենք գիտենք, որ դրանց իրագործումը յուրաքանչյուրից կպահանջի մտքի ծավալուն աշխատանք, լարված գործունեություն, նպատակասլացություն, գիտակցականություն և բարձր կազմակերպվածություն։

Բայց մենք գիտենք նաև, որ հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները լիովին պատրաստ են դրան, և մեր կուսակցական կազմակերպությունը, ինչպես միշտ, նրանց հմտորեն կառաջնորդի դեպի նորանոր մեծագործություններ։

Սովետական Հայաստանի կոմունիստները, բոլոր աշխատավորները կուսակցության ծրագրային նպատակներն ընկալում են որպես իրենց կենսական գործը և բոլոր ջանքերը կներդնեն դրանց իրագործման համար։ Նրանք լիովին պաշտպանում են հարազատ լենինյան կուսակցության և սովետական պետության ներքին ու արտաքին իմաստուն քաղաքականությունը։

ՍՄԿԿ-ի մարտական ջոկատներից մեկի՝ Հայաստանի կոմունիստական կուսակցության հեղափոխական ու աշխատանքային ավանդույթները, մեր կոմունիստների, բոլոր աշխատավորների աշխատանքային ու քաղաքական խանդավառությունը, նրանց կուռ համախմբվածությունը Լենինի կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի շուրջը, մեզ իրավունք են տալիս անվարան հայտարարելու՝ մեր խոսքը գործից չի տարբերվի, արարման նախանշված բնագծերը կնվաճվեն։

Կեցցե՛ Սովետական Միության մեծ կոմունիստական կուսակցությունը, որը մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո սովետական ժողովրդին առաջնորդում է դեպի կոմունիզմ։ (Զեկուցումը լսվեց մեծ ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր ծափահարություններով)։

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1986 թվականի հունվարի 25-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարում ընտրված Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի պլենումը։

Պլենումը Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընտրեց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանին։

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի երկրորդ քարտուղար ընտրեց ընկ. Յու. Պ. Կոչետկովին։

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի քարտուղարներ ընտրեց ընկ. ընկ. Վ. Բ. Ղալումյանին, Կ. Հ. Ղամբարյանին, Ռ. Ա. Արզումանյանին, Մ. Հ. Մուրադյանին։

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամներ ընտրեց ընկ. ընկ. Կ. Ս. Դեմիրճյանին, Ռ. Ա. Արզումանյանին, Մ. Պ. Կոլեսնիկովին, Յու. Պ. Կոչետկովին, Դ. Ս. Հարությունյանին, Մ. Կ. Հարությունյանին, Ս. Գ. Հարությունյանին, Վ. Բ. Ղալումյանին, Կ. Հ. Ղամբարյանին, Վ. Մ. Մովսիսյանին, Մ. Հ. Մուրադյանին, Ս. Մ. Պետրոսյանին, Լ. Գ. Սահակյանին, Ֆ. Տ. Սարգսյանին, Հ. Մ. Ոսկանյանին։

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածուներ ընտրեց ընկ. ընկ. Է. Փ. Ավագյանին, Հ. Հ. Հակոբյանին, Գ. Ա. Մարտիրոսյանին, Ք. Լ. Մանդալյանին, Մ. Ա. Յուզբաշյանին, Հ. Ա. Օհանյանին։

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովի նախագահ հաստատեց ընկ. Ս. Մ. Խաչատրյանին։

Պլենումը հաստատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բաժինների վարիչներ։

Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչ հաստատվեց ընկ. Ք. Լ. Մանդալյանը, պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ՝ ընկ. Գ. Ե. Ասատրյանը, գիտության և ուսումնական հաստատությունների բաժնի վարիչ՝ ընկ. Ա. Պ. Մելքոնյանը, արդյունաբերության բաժնի վարիչ՝ ընկ. Վ. Հ. Մեհրաբյանը, բաժնի վարիչ՝ ընկ. Ռ. Լ. Ստեփանյանը, թեթև արդյունաբերության և ժողովրդական սպառման ապրանքների բաժնի վարիչ՝ ընկ. Ա. Ա. Պյատկովան, շինարարության և քաղաքային տնտեսության բաժնի վարիչ՝ ընկ. Մ. Հ. Մուրադյանը, տրանսպորտի և կապի բաժնի վարիչ՝ ընկ. Մ. Ս. Մինասբեկյանը, գյուղատնտեսության և սննդի արդյունաբերության բաժնի վարիչ՝ ընկ. Ն. Կ. Այվազյանը, առևտրի և կենցաղային



սպասարկման բաժնի վարիչ՝ ընկ. Լ. Ս. Հակոբյանը, տնտեսագիտական բաժնի վարիչ՝ ընկ. Մ. Խ. Քոթանյանը, վարչական մարմինների բաժնի վարիչ՝ ընկ. Մ. Մ. Դավթյանը, ինֆորմացիայի և արտասահմանյան կապերի բաժնի վարիչ՝ ընկ. Ա. Հ. Ստեփանյանը, ընդհանուր բաժնի վարիչ՝ ընկ. Զ. Ա. Նունուշյանը։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի գործերի կառավարիչ հաստատվեց ընկ. Հ. Ա. Կարապետյանը։

Պլենումը «Սովետական Հայաստան» թերթի խմբագիր հաստատեց ընկ. Է. Ա. Մանուկյանին, «Կոմունիստ» թերթի խմբագիր՝ ընկ. Բ. Մ. Մկրտչյանին, «Սովետ Էրմանիստանի» թերթի խմբագիր՝ ընկ. Զ. Կ. Կուրբանովին, «Ռյա թազա» թերթի խմբագիր՝ ընկ. Մ. Ա. Մստոյանին, «Լենինյան ուղիով» ամսագրի գլխավոր խմբագիր՝ ընկ. Ա. Ս. Սիմոնյանին, «Կուսակցական խոսք» հանդեսի գլխավոր խմբագիր՝ ընկ. Խ. Հ. Հովակիմյանին։

Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի պլենումի աշխատանքին մասնակցում էին ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի սեկտորի վարիչ ընկ. Վ. Ա. Կոնդրատևը, ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատող ընկ. Վ. Ի. Պոլյակովը։

# ՏՆՏԵՍԱՓՈՐՁԻՑ ԴԵՊԻ ՏՆՏԵՍԱՎԱՐՄԱՆ ՆՈՐ ՄԵԹՈԴՆԵՐԻ ԼԱՅՆ ԱՐՄԱՏԱՎՈՐՈՒՄ

**Ս. ՆԱԶԱՐՅԱՆ**
ՀՍՍՀ պետպլանի էկոնոմիկայի և պլանավորման
ԳՀԻ բաժնի վարիչ, տնտեսագիտության թեկնածու

*ՀԿԿ XXVIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ լուրջ ուշադրություն նվիրեց ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործման հարցերին: Խորությամբ քննարկելով երկրի սոցիալական ու տնտեսական զարգացման առաջիկա հնգամյակի և մինչև 2000 թ. ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները, համագումարը կարևոր համարեց բարձրացնել հիմնական արտադրական օղակի՝ գիտաարտադրական և արտադրական միավորումների ու ձեռնարկությունների դերը, ապահովելով նրանց իրավունքների ու պարտականությունների օրգանական միասնությունը: «Հիմնական ուղղություններում» խնդիր է դրվում զգալիորեն ընդլայնել միավորումների ու ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնությունը, նրանց իրավունքները արտադրության տեխնիկական վերազինման ու պլանավորման բնագավառում:*

*Հանրային արտադրության արդյունավետության բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործության ուժեղացման պայմաններում կարևոր նշանակություն է ստանում տնտեսափորձի լայն արմատավորումը: Տնտեսավարման նոր մեթոդներով աշխատող ձեռնարկություններում ընդլայնվում են հնարավորությունները է՛լ ավելի խթանելու աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունն ու շահագրգռվածությունը՝ արտադրության զարգացման և արտադրանքի որակի բարձրացման նպատակով, ամբողջ կոլեկտիվի ջանքերը նպատակամղելով վերջնական բարձր արդյունքների: Տնտեսավարման նոր ձևերի արմատավորման շնորհիվ բարձրանում է պլանային աշխատանքի մակարդակը և ամրապնդվում պետական կարգապահությունը՝ առաջին պլան մղելով պայմանագրային պարտավորությունների կատարումը: Այդ ձեռնարկություններին իրավունք է տրված ինքնուրույնաբար օգտագործելու աշխատավարձի ֆոնդի տնտեսված մասը, գիտության ու տեխնիկայի զարգացման միասնական ֆոնդի միջոցների մի մասը և այլն:*

*Հանրապետության էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը տնտեսափորձի պայմաններում կատարում է իրացվող արտադրանքի ընդհանուր ծավալի պլանը, աճում է նորմատիվային զուտ արտադրանքի ծավալը: Պլանից ավելի թողարկվել է միլիոնավոր ռուբլիների արտադրանք: Որոշակի հաջողություններ ձեռք բերվեցին ձեռնարկությունների արտադրատնտեսական գործունեության հիմնական գնահատիչ ցուցանիշի՝ արտադրանքի իրացման ծավալի կատարման գործում՝ հաշվի առնելով ըստ տեսականու, որակի և կնքված պայմանագրերի ու պատվերների համապատասխան ժամկետներում մատակարարումների գծով պարտավորությունների կատարումը: Մինչդեռ այդ*



*կարևոր ցուցանիշը ամենուրեք չէ, որ անթերի է կատարվում: «Հայէլեկտրաշարժիչ» արտադրամիավորումը չապահովեց մատակարարումների գծով իրացման ծավալի 100 տոկոսով կատարումը՝ Կարագանդայի մետաղագործական գործարանից անհրաժեշտ քանակությամբ դինամային պողպատը նախատեսված ժամկետներում չստանալու պատճառով:*

*Պետք է նշել «Հայէլեկտրալույս», «Հայէլեկտրաապարատ», «Անդրկովկասկաբել» արտադրամիավորումների հաջողությունները մատակարարումների գծով արտադրանքի իրացման բնագավառում, որոնք անցած ժամանակաշրջանում կատարեցին իրենց պայմանագրային պարտավորությունները: Սակայն այս բոլորը ամենևին էլ չի նշանակում, թե արտադրության ու իրացման ոլորտում չեն եղել պրոբլեմներ ու անհամաձայնեցվածություններ: Պրակտիկան ցույց է տալիս, որ տնտեսափորձի հենց սկզբից միայն մի խումբ ձեռնարկություններ կայունորեն իրենց պայմանագրային պարտավորությունները կատարեցին լրիվ ծավալով: Դրանց թվում են Արթիկի վակուումային էլեկտրավառարանների գործարանը, Ստեփանավանի բարձր հաճախականության էլեկտրասարքավորումների, Չարենցավանի «ՆԻԻԽԻՏ», «Կամոկաբել» գործարանները, որոնք ժամանակին և հաջող լուծեցին տնտեսափորձի արմատավորման հետ կապված կազմակերպական-նախապատրաստական հարցերի զգալի մասը: Վերոհիշյալ ձեռնարկություններում այդ կապակցությամբ, ինչպես նաև նոր տեխնիկայի արդյունավետ արմատավորման շնորհիվ ապահովվեցին ապրանքային արտադրանքի ու աշխատանքի արտադրողականության աճի բարձր տեմպերը:*

*Էլեկտրատեխնիկական արդյունաբերությունում ամբողջությամբ վերցրած բարելավվել է աշխատանքի արտադրողականության ու աշխատավարձի աճի տեմպերի հարաբերակցությունը: 1980 թվականի համեմատությամբ, ճյուղում աշխատանքի արտադրողականությունն աճել է ավելի արագ տեմպերով, հնգամյա առաջադրանքով այդ նույն ժամանակաշրջանի համար նախատեսվածի համեմատությամբ: Միջին աշխատավարձի աճի փաստացի տեմպը տնտեսափորձի առաջին տարում կազմեց 12,9 տոկոս: Դրա հետ մեկտեղ զգալիորեն կրճատվեցին աշխատաժամանակի կորուստները (ավելի քան 1000 մարդ-օր), 1,3 կետով նվազեց ճյուղի ձեռնարկությունների աշխատուժի հոսունության մակարդակը, որը կազմեց 16 տոկոս: 1983 թվականի համեմատությամբ, աճեց որակի բարձր կարգի արտադրանքի արտադրության ծավալը: Ճյուղի ապրանքային արտադրանքում նրա տեսակարար կշիռը հասավ 50,9 տոկոսի, որը 1,5 կետով բարձր է 1983 թվականի մակարդակից: Որակի բարձր կարգի արտադրանքի համեմատաբար մեծ տեսակարար կշիռ ունեն Ստեփանավանի բարձր հաճախականության էլեկտրասարքավորումների գործարանը, Երևանի կիսահաղորդչային տեխնիկայի հատուկ կոնստրուկտորական տեխնիկական բյուրոն և «Հայէլեկտրալույս» միավորումը (համապատասխանաբար՝ 81,5, 69,5 և 68,5 տոկոս):*

*Տնտեսափորձի պայմաններում տեղի է ունենում տնտեսական խթանման ֆոնդի ավելացում: 1983 թվականի համեմատությամբ, հավելաճը կազմեց 13,7 տոկոս: Տնտեսական խթանման ֆոնդին մասհանումների տվյալների վերլուծությունը ցույց է տալիս, որ սահմանված նորմատիվների պայմաններում ֆոնդակազմավորման համակարգը վատ չգործեց: Դա վերաբերում է հատկապես այդ ֆոնդերի ձևավորման պրոցեսին՝ ի հաշիվ արտադրանքի իրացման և որականիշով ժողովրդական սպառման ապրանքների թողարկման: Այստեղ պետք է նշել, որ սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության ֆոնդն աստիճանաբար կդառնա աշխատավորների սոցիալական, բնակարանային ու կենցաղային պայմանների բարելավման հիմնական աղբյուր, և քանի որ դրանց մասհանումները կախված են, մասնավորապես, աշխատանքի արտադրողականության աճից, ապա բնակարանային ու կենցաղային պայմանների բարելավումը սերտ կապի մեջ է դրվում արտադրության արդյունավետության կարևորագույն ցուցանիշների*

հետ։ Արտադրության ռեզերվների օգտագործման ասպարեզում աշխատավորական կոլեկտիվների շահագրգռվածությունն ապահովելու և աշխատանքի արտադրողականության մակարդակը բարձրացնելու նպատակով մեծ դեր խաղաց ձեռնարկություններում աշխատավարձի տնտեսված ֆոնդի մի մասի օգտագործումը՝ առաջավոր, բարձրորակ աշխատողների խրախուսման, ինչպես նաև պրոֆեսիաների համատեղման համար լրացուցիչ վարձատրության ու պրոֆեսիոնալ վարպետության գծով տարիֆային դրույքների կամ պաշտոնային դրույքների նկատմամբ հավելումների վճարման համար։

Աշխատանքի արտադրողականության բարձր տեմպերի ապահովման գործում կարևորվում են կապիտալ շինարարությունը և արտադրության մեջ նոր հիմնական ֆոնդերի ներդրումը։ Վերլուծությունը ցույց է տալիս, որ հանրապետության էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկություններում չկատարվեց ֆինանսավորման բոլոր աղբյուրների գծով կապիտալ շինարարության պլանը։ Թերակատարվեցին ինչպես կապիտալ ներդրումների, այնպես էլ արտադրական նշանակության օբյեկտների, հիմնական ֆոնդերի գործարկման, ոչ կենտրոնացված կապիտալ ներդրումների հաշվին հիմնական ֆոնդերի շահագործման հանձնման պլանները։ Տեխնիկական վերազինման նպատակներին ուղղված կապիտալ ներդրումների հաշվին ապահովվեց կաբելային արտադրանքի, լուսավորման էլեկտրալամպերի, մինչև 100 կվտ հզորությամբ էլեկտրաշարժիչների, ցածրավոլտ ապարատուրայի գծով կարողությունների աճը։ Իրացվել են տասնյակ նոր արտադրատեսակներ, որոնց մեծ մասը ունի պետական որականիշ։ Այդպիսի բարձրորակ արտադրանքի թվին են պատկանում զանազան էլեկտրական սարքերի համար ուժային հաղորդալարերը, խցիկավոր էլեկտրավառարանները, ԱԻ նոր սերիայի էլեկտրաշարժիչները, մարդատար վերելակների կառավարման կոմպլեքսային համասարքերը և այլն։ Սակայն, չնայած այս ամենին, մեկ ռուբլի ծախսերին ընկնող շահույթը և տարեկան տնտեսական արդյունքը ճյուղում նվազել են։

Անշուշտ, մեկ-երկու տարվա աշխատանքի արդյունքները հնարավորություն են տալիս լուրջ հետևություններ անել և դատել տնտեսափորձի առավելությունների ու թերությունների մասին։ Անվիճելիորեն, օրվա պահանջներին համապատասխան, էկոնոմիկայի կառավարման տնտեսական մեխանիզմի կատարելագործման ասպարեզում կատարվեց նկատելի քայլ։

Տնտեսափորձի անցկացման ընթացքում էապես ընդլայնվեց ճյուղի ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնությունը, ուժեղացավ նրանց պատասխանատվությունը աշխատանքի վերջնական արդյունքների համար։ Բայց և այնպես դեռևս առկա են մի շարք չլուծված հարցեր՝ կապված, մասնավորապես, նյութատեխնիկական ռեսուրսների ապահովման հետ։ Այսպես, ճյուղը, արտադրական ծրագրին համապատասխան, նյութական ռեսուրսների ֆոնդերի հատկացման ժամկետների խախտման պատճառով, չկատարեց 1985 թվականի առաջին կիսամյակի արտադրանքի իրացման ծավալի պլանը՝ ըստ մատակարարումների գծով պարտավորությունների (97,9 տոկոս)։ Այդ նույն ժամանակամիջոցի հիմնական գնահատիչ ցուցանիշի պլանը չկատարեցին նաև հանրապետության հաստոցագործիքաշինական արդյունաբերության և սարքաշինական ձեռնարկությունները (համապատասխանաբար՝ 98,6 և 93,8 տոկոս), որոնք տնտեսափորձի պայմաններում աշխատում են 1985 թվականի հունվարի 1-ից։ Մեքենաշինության վերոհիշյալ ճյուղերը ժողովրդական տնտեսությանը պակաս մատակարարեցին մի քանի մլն ռուբլու արտադրանք։ Այս պլանային ցուցանիշի թերակատարման հիմնական պատճառներն են նյութատեխնիկական անկանոն մատակարարումը և առաջավոր, առավել կատարյալ տեխնոլոգիայի թույլ արմատավորումը։ Այսպես, մի շարք ձեռնարկություն-



ներում խախտվում են նոր տեխնիկայի արմատավորման ժամկետները, նըկատվում են տեխնիկական վերազինման պլանները չկատարելու դեպքեր (Երևանի հաստոցաարտադրական միավորում, «Սևանի» միավորում)։ Բացի այդ, տնտեսափորձի պայմաններում ճյուղի ձեռնարկությունների արտադրական գործունեությունը ցույց է տալիս, որ կիրառված միջոցառումները լրիվ չափով չեն նպաստում արտադրական ֆոնդերի, մասնավորապես ավտոմատ սարքավորումների առավել ռացիոնալ օգտագործմանը, գործոն, որը, որպես կանոն, կարող է էականորեն անդրադառնալ նորագույն տեխնիկայի արմատավորման պրոցեսների, աշխատանքի արտադրողականության ու ամբողջությամբ վերցրած աշխատանքի արդյունավետության աճի բարձր տեմպերի ապահովման վրա։ Պետք է նշել, որ տնտեսափորձի պայմաններում արտադրության զարգացման ֆոնդին տրվող մասհանումների գործող նորմատիվները բավականաչափ չեն խթանում տեխնոլոգիական նոր պրոցեսների արմատավորմանը։ Ակնհայտ է, որ տնտեսափորձը դեռևս դանդաղ է խթանում նաև այնպիսի արտադրական ռեզերվների բացահայտմանը, որոնք թույլ տան ձեռնարկություններին ստանձնելու ապրանքային արտադրանքի թողարկման պլանային բարձր առաջադրանքներ։ Դրա հետևանքով էլեկտրատեխնիկական արդյունաբերության ապրանքային արտադրանքի իրացման տեմպերը հարաճում չեն։

Ապրանքային արտադրանքի պլանային աճի և մատակարարումների գծով պայմանագրային պարտավորությունների կատարման ապահովման վրա տնտեսական լծակների ներգործության վերլուծությունը վկայում է նյութական խրախուսման ֆոնդի ստեղծման կարգի կատարելագործման նպատակահարմարության մասին։

Հայտնի է, որ ապրանքային արտադրանքի թողարկման պլանային ծավալը ապահովող ոչ բոլոր ձեռնարկությունները հնարավորություն ունեցան իրականացնելու մատակարարումների գծով նրա կատարումը։ Իրացման պլանի թերակատարման մյուս պատճառը պատրաստի արտադրանքի թերբեռնումն է, քանի որ տարեկան առաջադրանքի գրեթե 10 տոկոսը բաժին է ընկնում ոչ ստանդարտ քանակություններով պատվերներին, որոնք չեն համապատասխանում բեռնման նվազագույն նորմաներին։ Մասնակի դեպքերում մատակարարումների պլանը ձախողվում էր նաև արտադրանքի իրացման պլանային ժամկետի ընթացքում վերադաս կազմակերպությունների կողմից պայմանագրերը ժամանակին չապահովելու պատճառով։

Տնտեսափորձի պայմաններում ձեռնարկությունների առջև ծառացած խնդիրների հաջող կատարման համար անհրաժեշտ է, մասնավորապես, երկարաժամկետ պայմանագրերի կնքման միջոցով ընդլայնել ուղղակի տնտեսական կապերը՝ միաժամանակ զարգացնելով սոցիալիստական մրցության պայմանագրային հիմունքները։

Նյութական խրախուսման համակարգի հետագա զարգացման համար նըպատակահարմար է պլանային ցուցանիշների կատարումը գնահատել ըստ արտադրամիավորումների կազմում մտնող առանձին ձեռնարկությունների։ Միաժամանակ հարկ է որականիշով ու բարձր կարգի արտադրանքի մատակարարման պլանը կատարող ձեռնարկություններին իրավունք տալ իրենց տնօրինության տակ թողնելու գների հավելումներից ստացված շահույթի մի մասը։ Նյութական խրախուսման ֆոնդի ավելացման նման կարգը կապահովի թողարկվող արտադրանքի որակի և տեխնիկական մակարդակի բարձրացման կայուն տեմպեր ոչ միայն առանձին ձեռնարկություններում, այլև ընդհանուր առմամբ միավորումներում։ Պետք է նշել, որ տնտեսական խթանման ֆոնդի և աշխատավարձի ֆոնդի կազմավորման՝ նոր կարգով սահմանված նորմաներով ու նորմատիվներով պայմանագրային մատակա-

բարումների գծով արտադրանքի թողարկման և իրացման պլաններում լրիվ չեն հաշվի առնված առանձին արտադրական կոլեկտիվների աշխատանքի տարբեր պայմանները։ Դրանք դառնում են հեշտ կատարելի միատեսակ արտադրանք թողարկող կամ չափազանց նեղ անվանակարգ ունեցող ձեռնարկությունների համար և, ընդհակառակը, դժվար կատարելի այն ձեռնարկությունների համար, որոնք զարգացման բարձր տեմպեր ունեին մինչև տնտեսափորձը։ Այս պատճառով դեռևս ճյուղի ոչ բոլոր ձեռնարկություններն են իրենց մոտ արմատավորում գիտատեխնիկական առաջադիմության գծով միջոցառումներ, հատկապես արտադրության ավտոմատացման, հաշվողական տեխնիկայի արմատավորման, սարքավորումների այժմեականացման, արտադրանքի նոր տեսակների յուրացման միջոցառումներ։ Ամբողջությամբ վերցրած ճյուղի գծով տեխնիկական նորամուծությունների հաշվին նախատեսված էր պայմանականորեն ազատել զգալի թվով աշխատող, սակայն իրականում այդ առաջադրանքը չի կատարված։

Ճյուղում ծայրահեղ դանդաղ տեմպերով է ընթանում թողարկվող արտադրանքի անվանակարգի նորացման պրոցեսը։ Այսպես, օրինակ, անցած հնգամյակի չորս տարում «Էլեկտրասարք» միավորման թողարկած 87 անվանման արտադրանքից նորը ընդամենը 9-ն էր, «Ավտոմատիկա» գործարանում՝ 29-ից 5-ը, անալիտիկ սարքերի գործարանում՝ 16-ից միայն 1-ը։

Երևանի կաբելի գործարանում ավելի քան 10 տարի առաջ յուրացված արտադրանքի տեսակարար կշիռը պատրաստի արտադրանքի ընդհանուր ծավալում կազմել է 72,1 տոկոս, «Հայէլեկտրապարատ» միավորումում՝ 65,5, «Ալմաստ» գործարանում՝ 84,8 տոկոս։ Նույնն է նաև վիճակը «Հաստոցանորմալ», Չարենցավանի գործիքաշինական, Երևանի ավտոբեռնիչների, Լենինականի կոմպրեսորների գործարաններում, իսկ Երևանի ավտոգործարանում այն կազմում է 100 տոկոս։

Տնտեսափորձին մասնակցած արդյունաբերական 77 միավորումներին և ձեռնարկություններին բաժին է ընկնում հանրապետության արդյունաբերության իրացվող արտադրանքի ծավալի 37,7 տոկոսը, պայմանագրային մատակարարումների գծով իրացվող արտադրանքի 40,3 տոկոսը, ապրանքային արտադրանքի 36,9, որակի բարձր կատեգորիայի արտադրանքի 56,7 և արդյունաբերական-արտադրական անձնակազմի թվաքանակի 41,2 տոկոսը։ Այդ ձեռնարկություններն ապահովեցին պլանից ավելի թողարկված արտադրանքի իրացման ծավալի 48,8 տոկոսը, ապրանքային արտադրության՝ 50,4 և որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի 98,9 տոկոսը։

1985 թվականին տնտեսափորձի անցան նաև հաստոցագործիքաշինական արդյունաբերությունը, նավթաքիմիական մեքենաշինությունը և սարքաշինությունը։ Այդ մինիստրությունների գծով մատակարարումների պայմանագրով իրացվող արտադրանքի 1985 թվականի առաջին կիսամյակի և 1984 թվականի պլանները կատարվեցին 99—100 տոկոսով։ Տնտեսափորձի կարևորագույն արդյունքն այն է, որ, եթե էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ 1983—1984 թվականների առաջին կիսամյակում ապրանքային արտադրանքի թողարկման աճի փաստացի տեմպը կազմեց 4,7 տոկոս, ապա 1984—1985 թվականների առաջին կիսամյակում այդ ցուցանիշը բարձրացավ և կազմեց 5,3 տոկոս։ Սակայն մեքենաշինության որոշ ձեռնարկություններ տնտեսափորձի պայմաններում չկատարեցին պայմանագրային մատակարարումների գծով արտադրանքի իրացման պլանը։ Դրանցից են՝ «Հայքիմմեքենա», Չարենցավանի հաստոցաշինական, Լենինականի դարբնոցամամլիչային սարքավորումների արտադրամիավորումները, Կիրովականի «Ավտոմատիկա» գործարանը։

Տնտեսափորձը զգալիորեն նպաստեց որակի բարձր կարգի արտադրանքի տեսակարար կշռի բարձրացմանը։ Այդ ցուցանիշը էլեկտրատեխնիկական ար-



դյունաբերությունում կազմեց 51,4 տոկոս, հաստոցաշինությունում՝ 33,1, սարքաշինությունում՝ 34,3 տոկոս։ Նշված երեք ենթաճյուղերում 1985 թվականի առաջին կիսամյակում աշխատանքի արտադրողականության աճի հաշվին արտադրանքի հավելաճի բաժինը կազմեց համապատասխանաբար՝ 84,5, 76,2 և 100 տոկոս։

Տնտեսափորձի պայմաններում ձեռք բերած հաջողությունների հետ մեկտեղ, գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների դանդաղ օգտագործման հետևանքով սահմանափակվում է ապրանքային արտադրանքի ինքնարժեքի իջեցումը։ Այսպես, տնտեսափորձի անցած մեքենաշինության բոլոր ձեռնարկություններում արտադրական գերածախսը կազմեց մոտ 3 մլն ռուբլի, որի կեսը՝ նյութական ծախսումների գծով։

Տնտեսափորձը նպաստում է արտադրական հարաբերությունների կատարելագործմանը, զարգացնում արտադրական օրգանիզմի՝ խնայողաբար աշխատելու կարողությունը։ Նոր պայմաններում կարգավորված տնտեսական խթանման համակարգն առաջացրել է ավելորդ բանվորական ուժի կրճատման պրոցես, ակտիվացրել աշխատավորական կոլեկտիվների ստեղծագործական նախաձեռնությունը և ուժեղանում է աշխատանքի վարձատրության կապը վերջնական արդյունքների հետ։

Միավորումների և ձեռնարկությունների աշխատանքի արդյունքները վկայում են այն մասին, որ տնտեսափորձի ընձեռած հնարավորությունները դրականորեն ներազդեցին նրանց գործունեության վրա. բարձրացավ աշխատավորական կոլեկտիվների պատասխանատվությունը և շահագրգռվածությունը առաջադրանքների անթերի կատարման ու բարձր արդյունքների հասնելու համար։

Ըստ տնտեսափորձի պայմանների, ընդլայնվում են աշխատանքի վերջնական արդյունքների համար աշխատավորական կոլեկտիվների իրավունքներն ու պատասխանատվությունը, մեծանում է նրանց դերը ինչպես արտադրության կառավարման, այնպես էլ նախապլանային ժամանակաշրջանում արտադրական ծրագրերի կազմման, նյութատեխնիկական ռեսուրսների հետ դրանց համաձայնեցվածության ապահովման գործում։ Ընդ որում ձեռնարկության համար պլանավորվում են զգալիորեն պակաս թվով ցուցանիշներ։ Դա նրան ազատում է չափից դուրս խնամակալությունից և թույլ տալիս առավել գործնականորեն լուծելու սեփական արտադրության զարգացման հարցերը։

Ներկայումս լրիվ չափով չեն իրականացված ձեռնարկությունները երկարատև ուղղակի տնտեսական կապերի փոխադրման այնպիսի միջոցառումներ, որոնք ապահովեին ՍՍՀՄ պետմատի տերիտորիալ մարմինների միջոցով ձեռնարկությունների և կառույցների նյութական ռեսուրսների կոմպլեքսային մատակարարումը, պետմատի սիստեմի ձեռնարկություններում արտադրական սպառման համար արտադրանքի նախապատրաստման ծառայությունների ընդլայնումը և այլն։

Սահմանված պլանային տեխնիկատնտեսական ցուցանիշների և խթանման ֆոնդերի կազմավորման համակարգը նույնպես չի շահագրգռում աշխատավորական կոլեկտիվներին՝ ձեռնարկությունում աշխատանքի արտադրողականության աճի, արտադրանքի ինքնարժեքի իջեցման լարված պլանների կատարման համար և այլն։ Այս թերությունը վերացնելու նպատակով անհրաժեշտ է ուժեղացնել կապը, մի կողմից, աշխատանքի արտադրողականության պլանային աճի և ինքնարժեքի իջեցման միջև, մյուս կողմից՝ աշխատավարձի և նյութական խրախուսման ֆոնդի աճի միջև։

Տնտեսափորձը չի ընդգրկում նաև ճյուղային և ռեգիոնալ կառավարման մարմինների փոխազդեցության հարցերը, հաշվի չի առնում հանրային արտադրության արդյունավետության աճի այն մեծ հնարավորությունները, որոնք տեղական մարմինները կարող են օգտագործել ձեռնարկությունների և միա-

վորումների տեղաբաշխման ռեգիոններում։ Ճյուղային տնտեսափորձում չեն բացահայտվում տարբեր մինիստրությունների միևնույն շրջանի ձեռնարկությունների փոխազդեցության բարելավման հետ կապված արտադրության արդյունավետության մեծ ռեզերվները։ Ըստ երևույթին, ճյուղային տնտեսափորձերը պետք է լրացվեն կոմպլեքսային ռեգիոնալ տնտեսափորձով և կարևոր տեղ գրավեն կառավարման մեխանիզմի կատարելագործման ասպարեզում։

Ի թիվս այլ միջոցառումների, խիստ կարևոր է նյութական շահագրգռվածության դերի բարձրացումը աշխատանքային ծախսումների ամեն կերպ տնտեսման հարցում, քանի որ այդ բնագավառում մի շարք մեթոդաբանական հարցեր դեռևս չեն լուծված։ Մասնավորապես սուր անհրաժեշտություն է դարձել արտադրական ռեսուրսների խնայողության տեսակի և ձևի հատկանիշով տնտեսական խթանման առաջնությունների և տարբերակված նորմատիվների համակարգի ստեղծումը, քանի որ նման համակարգի բացակայությունը արտադրության արդյունավետության բարձրացման գծով տնտեսական պրակտիկան դարձնում է թույլ կառավարելի։

Լայնամասշտաբ տնտեսափորձը հնարավորություն է տալիս վերակառուցելու ամբողջ տնտեսական մեխանիզմը։ Նոր պայմանների անցած ճյուղերի ձեռնարկությունների աշխատանքի փորձը ցույց է տալիս համապատասխան մինիստրությունների կողմից մեթոդական ու նորմատիվ փաստաթղթերի ոչ բավականաչափ մշակվածությունը։ Մինիստրությունների մշակումների գլխավոր թերությունը նրանցում պլանավորման, աշխատանքի վարձատրության և նրա խթանման բովանդակության նկատմամբ գրեթե նախկին մոտեցման պահպանումն է, արտադրության կոմպլեքսային զարգացման մակարդակի գնահատման գիտական մեթոդների բացակայությունը։ Նշված վրիպումները վերացնելու նպատակով անհրաժեշտ է նախապատրաստել հանձնարարականներ ստուգաչափերի օգնությամբ արտադրական պրոցեսի տնտեսական նորմավորում իրականացնելու համար՝ պլանավորելով նրա տեխնիկատնտեսական ցուցանիշներն ըստ այդ նորմատիվների կիրառման աստիճանի։ Այսպես, արտադրության կոմպլեքսային զարգացման և նրա տեխնիկական կատարելության մակարդակը ընդգրկում է վերջնական արդյունքների վրա ներազդող այն գործոնների ու դրանց վիճակների ամբողջությունը, որոնք հիմք են ծառայում գիտատեխնիկական ծրագրերի կոնկրետ առաջադրանքները մշակելու համար։ Այդպիսի բաղադրամասերից մեկը հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետության ցուցանիշն է։

Գիտատեխնիկական առաջադիմության հիման վրա արտադրության ինտենսիվացման պայմաններում հիմնական ֆոնդերի օգտագործման հետագա բարելավման հարցը լուծելիս առավել հրատապ է դառնում ավտոմատացված արտադրական համակարգերի ստեղծման խնդիրը։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մի շարք ճյուղերում կան բարոյապես հնացած և ֆիզիկապես մաշված շատ մեքենաներ ու սարքավորումներ։ Այդուհանդերձ, արդյունաբերական մինիստրությունները մատակարարվող սարքավորումների գերակշռող մասն ուղղում են արտադրական նոր կարողությունների ստեղծմանը։ Միաժամանակ չարդարացված ձևով ֆինանսական ու նյութական շատ ռեսուրսներ են ծախսվում հնացած տեխնիկան նվազ արդյունավետ հիմնանորոգման ենթարկելու համար՝ առանց դրա այժմեականացման։

Տնտեսափորձը միավորումներին և ձեռնարկություններին լայն հնարավորություն է ընձեռում տեխնիկական առաջադիմության ասպարեզում։ Ավելացան ձեռնարկությունների տեխնիկական վերազինմանը հատկացվող ֆինանսական ռեսուրսները (արտադրության զարգացման ֆոնդ, ամորտիզացիոն մասհանումներից բաժին, պետբանկի վարկեր և այլն), նախագծանախահաշ-



վային փաստաթղթերն ինքնուրույնաբար մշակելու և հաստատելու, միջոցառման ծավալը որոշելու, սեփական ուժերով դրանց անցկացման ժամկետները պլանավորելու ու իրականացնելու իրավունք։ Այս ամենն արագացրին հիմնական արտադրական ֆոնդերի նորացման տեմպերը, բացահայտվեցին չլուծված շատ պրոբլեմներ։ Օրինակ, չնայած տեխնիկական վերազինմանն ուղղվող միջոցների զգալի ավելացմանը, ֆոնդերի մեծ մաշվածության պատճառով դրանք բավականաչափ չեն։ Այդ կապակցությամբ հարկ է ավելացնել արտադրության զարգացման ֆոնդերի կազմավորման նորմատիվները և բարելավել հիմնական արտադրական ֆոնդերի օգտագործման վիճակը։

Անցած հնգամյակի տարիներին ճյուղում որոշ չափով աճել է հերթափոխայնության գործակիցը, սակայն այն դեռևս մնում է ցածր մակարդակի վրա, քանի որ շատ ձեռնարկություններ չեն կատարում նշված գործակցի բարձրացման առաջադրանքները։ Այսպես, օրինակ, Երևանի հաստոցաշինական միավորման հիմնական արտադրությունում հերթափոխայնության փաստացի գործակիցը 0,05 կետով ցածր էր պլանով սահմանվածից, «Տեխսարքավորանք» միավորումում՝ 0,11 կետով, Լենինականի դարբնոցամամլիչային սարքավորումների միավորումում՝ 0,05 կետով, «Հայհաստոց» միավորումում մետաղամշակման բոլոր սարքավորումների հերթափոխայնության գործակիցը կազմեց ընդամենը 0,80, Լենինականի անալիտիկ սարքերի փորձնական գործարանում՝ 1,05, գեղարվեստական ժամացույցների գործարանում՝ 0,99։

Սարքավորումների օգտագործման ցածր մակարդակը մասնակիորեն բացատրվում է պարապուրդներով։ Այսպես, ստուգման պահին ճյուղում օրվա ընթացքում չէր աշխատել 3.250 միավոր սարքավորում, այսինքն՝ փաստորեն ամեն մի տասներկուերորդ միավորը, իսկ ներհերթափոխային պարապուրդները կազմեցին սարքավորումների 13,8 տոկոսը։ Սարքավորումներն անբավարար են օգտագործվում նաև օրվա ընթացքում։ Եթե առաջին հերթափոխում աշխատում է սարքավորումների 10 միավորից 9-ը, ապա երկրորդ հերթափոխում՝ միայն 5-ը, իսկ երրորդում՝ 358 միավորից միայն մեկը։

Այսպիսով, արտադրական ձեռնարկությունների (միավորումների) տնտեսական գործունեությունը գնահատելիս, արտադրանքի իրացման առաջադրանքների, մատակարարումների գծով պայմանագրային պարտավորությունների կատարման, աշխատանքի արտադրողականության աճի հետ մեկտեղ անհրաժեշտ է հաշվի առնել արտադրական կարողությունների օգտագործումը։ Այս կապակցությամբ նպատակահարմար է տնտեսական գործունեության պլանավորման և արդյունքների գնահատման պրակտիկայում սահմանել «նորմատիվային արտադրական կարողություն» ցուցանիշը։

Աշխատանքի նոր պայմաններում հատուկ նշանակություն է ստանում ձեռնարկությունները համապատասխան տնտեսական այնպիսի նորմատիվներով ապահովելը, որոնք կգործեն երկարատև ժամանակաշրջանում և նախադրյալներ կստեղծեն նյութական ռեսուրսների, տնտեսական խթանման ֆոնդերի կազմավորման և պայմանագրային մատակարարումների գծով արտադրանքի իրացման պլանների կատարման համար։ Ընդ որում պարտադիր պայման է տնտեսական նորմատիվների ու պայմանագրային մատակարարումների փոխպայմանավորվածությունը, որի էությունը թողարկվող ապրանքային արտադրանքի ծավալի լրիվ իրացումն է՝ հաշվի առնելով նյութական ռեսուրսների առանձնացումը՝ նրանց օգտագործման նորմաներին ու նորմատիվներին համապատասխան։

Տնտեսափորձի արմատավորման առաջին արդյունքներից կարելի է հանգել մի շարք եզրակացությունների.

Տնտեսավարման նոր պայմաններում հանրապետության մեքենաշինության առանձին միավորումներում և ձեռնարկություններում բացակայում է թողարկվող ամբողջ արտադրանքի նկատմամբ տեխնիկական պայմանների կատարման և արտադրանքի որակը պայմանավորող պետական ստանդարտների արմատավորման պատշաճ կարգապահությունը, անհրաժեշտ ուշադրություն չի

դարձվում չափումների նոր, առավել կատարյալ մեթոդների ստեղծմանը, շինվածքների և նրանց հիմնական մասերի պարամետրերի վերահսկողության ավտոմատացված օպերացիաների մշակմանը, ինչպես նաև ռեժիմների ու պարամետրերի կառավարման համար արտադրության տեխնոլոգիական պրոցեսների չափումների և վերահսկողության միջոցների ստեղծմանը։

Նշված թերությունները վերացնելու նպատակով անհրաժեշտ է էլեկտրատեխնիկական արդյունաբերության առաջավոր ձեռնարկությունների փորձը տարածել տնտեսավարման նոր պայմանների փոխադրված մեքենաշինության մյուս ենթաճյուղերում, ստեղծել արտադրանքի որակի ուսումնասիրման, վերլուծության ու վերահսկողության տերիտորիալ գիտամեթոդական բաժիններ։ Նպատակահարմար է միջոցառումներ իրականացնել գիտական մշակումների օգտագործման ու կոնկրետ հատույցի համար գիտահետազոտական ինստիտուտների և գործարանների կոնստրուկտորական բյուրոների պատասխանատվության բարձրացման համար՝ հաշվի առնելով տվյալ անվանակարգով թողարկվող արտադրանքի որակի և հուսալիության ապահովման ուղղությամբ աշխատանքների կազմակերպման գործում նրանց մասնակցությունը։

Տնտեսափորձի ընթացքում ստուգված՝ տնտեսավարման նոր մեթոդների պրակտիկ ներդրումը կարևոր քայլ է ժողովրդական տնտեսության կառավարման ամբողջական համակարգի ստեղծման ճանապարհին, այն կապահովի պլանավորման բարելավման, տնտեսական լծակների և խթանների ներգործության ուժեղացման ու կառավարման կազմակերպական կառուցվածքի կատարելագործման օրգանական միասնությունը։ Այդ մասին հանգամանորեն նշված է «Տնտեսավարման նոր մեթոդների լայն տարածման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման վրա դրանց ներգործության ուժեղացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած որոշման մեջ։

ՍՄԿԿ Կենտկոմը և կառավարությունը գտնում են, որ տնտեսավարումը բարելավելու նպատակով տնտեսափորձի ընձեռած հնարավորությունները և նախատեսված միջոցառումները իրականացվում են ոչ բավարար արդյունավետությամբ։ Դանդաղ են վերանայվում մինիստրությունների աշխատանքի ոճն ու մեթոդները, տնտեսական մեխանիզմը դեռևս հարկ եղած ներգործություն չի ունենում գիտատեխնիկական առաջընթացի արագացման վրա, ձեռնարկությունները անհրաժեշտ տնտեսական պատասխանատվություն չեն կրում բարոյապես հնացած արտադրանք թողարկելու համար։ Որոշմամբ նոր միջոցառումներ են նախատեսվում տնտեսափորձի լայն արմատավորման և արդյունավետության բարձրացման նպատակով։ 1986 թ. հունվարի 1-ից տնտեսավարման նոր կարգի ոլորտն են ընդգրկվում ժողովրդական տնտեսության մի շարք նոր ճյուղեր, առանձին միավորումներ ու ձեռնարկություններ։ Այդ ամենը նպատակամղված է բարձրացնելու աշխատանքի վերջնական արդյունքների համար կոլեկտիվների պատասխանատվությունն ու շահագրգռությունը, արագացնելու գիտատեխնիկական առաջադիմությունը, ապահովելու արդիական տեխնիկական մակարդակով բարձրորակ արտադրանքի թողարկումը։

---

# ԿԵՆԴԱՆԻ ԽՈՍՔԻ ՈՒԺԸ

**Վ. ԱԼԱՎԵՐԴՅԱՆ**
«Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման
կուսկոմիտեի քաղլուսկաբինետի վարիչ

ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ համար
միշտ եղել ու մնում է որպես անփոխարինելի զենք,
լայն մասսաների հետ մշտական կապի հուսալի օղակ, աշխատավորների քա-
ղաքական դաստիարակության, կուսակցության մեծ մտահղացումների իրա-
կանացման համար նրանց ուժերի մոբիլիզացման փորձված միջոց։ Վ. Ի. Լե-
նինը, բարձր գնահատելով քաղաքական-մասսայական ագիտացիայի դերը,
նշել է, որ «փոխարինել այդ գործը որևէ ուրիշ բանով անհնարին է ո՛չ այժմ,
ոչ էլ որևէ այլ ժամանակ» (ԵԼԺ, հ. 6, էջ 99)։ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան
(1983 թ.) պլենումում նշվեց, որ մասսայական-քաղաքական աշխատանքը
կոչված է ամրապնդելու կուսակցության և ժողովրդի միասնությունը, բարձ-
րացնելու աշխատավորների կոմունիստական համոզվածությունը, քաղաքա-
կան ակտիվությունը, զարգացնելու նրանց ստեղծագործական եռանդը։ Այդ
խնդիրներն իրենց արտացոլումն են գտել նաև ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրու-
թյան նախագծում, և դրանց իրականացման գործին պետք է ծառայի նաև քա-
ղաքական բանավոր ագիտացիան։

Ղեկավարվելով լենինյան ցուցումներով և կուսակցության արդի պահանջ-
ներով՝ «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման կուսկոմիտեն, նրա
սկզբնական կազմակերպությունները ամեն կերպ ձգտում են կոլեկտիվների
անդամների համակողմանի դաստիարակությանը արդյունավետ կերպով ծա-
ռայեցնել գաղափարախոսական ներազդման ողջ պոտենցիալը, այդ թվում
և քաղաքական բանավոր ագիտացիայի միջոցները։ Նրանք հետևում են, որ-
պեսզի անցկացվող զրույցներն ու հաղորդումները, զեկուցումներն ու դասա-
խոսությունները, քաղաքական-մասսայական բնույթի բոլոր միջոցառումները
լինեն բազմակողմանի տարբերակված, օպերատիվ, մոբիլիզացնող, նպաստեն
արտադրանքի որակի և արտադրության արդյունավետության բարձրացման
համար ռեզերվների որոնմանը, կազմակերպվածության, կարգ ու կանոնի ամ-
րապնդմանը, կոլեկտիվներում բարոյահոգեբանական առողջ ու գործարար
մթնոլորտի ստեղծմանը։

Կուսկոմիտեն քաղաքական-մասսայական աշխատանքում առանձնապես
կարևոր տեղ է հատկացնում քաղինֆորմատորների գործունեությանը։ Նրանք
բարձրագույն կրթությամբ ու քաղաքականապես կոփված կոմունիստներ են,
կոլեկտիվի շրջանում հեղինակություն վայելող ղեկավար աշխատողներ։ Միա-
վորման քաղինֆորմատորներն ամիսը 2—3 անգամ հակիրճ ու բովանդակա-
լից ինֆորմացիաներ են տալիս էլեկտրամեքենաշինարարներին կուսակցու-
թյան և կառավարության որոշումների վերաբերյալ, մեկնաբանում երկրի քա-
ղաքական, սոցիալ-տնտեսական, կուլտուրական կյանքի և միջազգային դրու-
թյան հրատապ պրոբլեմներն ու վերջին իրադարձությունները։ Քաղինֆորմա-
տորներից յուրաքանչյուրը մասնագիտանում է միայն մեկ ասպարեզում։
Կուսկոմիտեն նրանց աշխատանքը պլանավորում է այնպես, որ ամսվա ըն-
թացքում ամեն մի ստորաբաժանման կոլեկտիվ կարողանա ինֆորմացիա
ստանալ այդ կարևոր բնագավառների վերաբերյալ։ Ներկայումս քաղինֆոր-
մատորների, ինչպես և միավորման գաղափարախոսական մյուս կադրերի
գործունեությունը նպատակաուղղված է նախահամագումարյան փաստաթղ-

նակը։ Նրանք երկար տարիների ընթացքում չեն տվել ոչ մի ցածրորակ արտադրանք և աշխատում են առանց տեխնիկական վերահսկիչի։ Բայց, ցավոք, ոմանք խախտում են էլեկտրական մեքենաների պատրաստման տեխնոլոգիան, որակի հաշվին ավելացնում քանակը և այդ ձևով ստվեր գցում կոլեկտիվի գործադրած ջանքերի վրա։

Կարևորն այն է, որ ագիտատորն իր աշխատանքով ու գործելակերպով օրինակ է ծառայում իր ունկնդիրներին։ Նրա նախաձեռնությամբ բրիգադում ներդրվել է էլեկտրոդների խնայողության մեթոդը։ Թափոնների խելամիտ օգտագործման շնորհիվ միայն անցած տարի բրիգադը տնտեսել է 600 կգ էլեկտրոդ։ Բրիգադավարի մի շարք ռացիոնալիզատորական առաջարկներ ներդրվել են արտադրության մեջ։ Միայն «ԴՍ—30, 60» շարժական էլեկտրակայանի շրջանակների կառուցվածքային փոփոխման առաջարկի շնորհիվ ձեռնարկությունը տարեկան տնտեսում է 12—15 տոննա սև մետաղ։

Ա. Մարգարյանն իր զրույցների ընթացքում ուշադրություն է նվիրում խնայողության ոչ միայն տնտեսական, նյութական, այլ նաև սոցիալական, դաստիարակչական կողմին։ Իրենց զրույցների թեմատիկայում խնայողության հարցերին կարևոր տեղ են հատկացնում նաև մյուս ագիտատորները։ Նրանք նպաստում են այդ առթիվ ծավալված շարժման լայն տարածմանն ու արմատավորմանը։ Այսպես, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Ս. Ֆահրադյանը հանդես է եկել «Շաբաթվա մեկ օրը աշխատել խնայված նյութերի ու էլեկտրաէներգիայի հաշվին» նախաձեռնությամբ։ Ագիտատորների օգնությամբ այն լայն արձագանք գտավ կոլեկտիվում։

Նոր տիպի տնտեսական մտածողության ձևավորումը, նորի, առաջավորի ներդրումը միավորման ագիտատորների գլխավոր հոգսերից են։ Նրանք միավորման գաղափարախոսական մյուս կադրերի հետ մեկտեղ լայնորեն պրոպագանդում են աշխատանքի կազմակերպման ու վարձատրման նոր ձևը, ցույց տալիս դրա առավելությունը։ Այդ ամենի շնորհիվ այսօր միավորման 223 բրիգադներից 156-ը աշխատում են նոր եղանակով։ Ագիտատորները զրույցի մասնակիցներին պատմում են, որ դրա արմատավորման շնորհիվ վերջին մեկ տարվա ընթացքում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 5,6, իսկ մեկ ռուբլուն ընկնող ապրանքային արտադրանքի ծախսերը իջել են 0,76 տոկոսով։ Նրանք ունկնդիրներին ծանոթացնում են այդ եղանակով աշխատող բրիգադների փորձին։

Անմիջականորեն աշխատելով արտադրության ներքին օղակներում՝ միավորման ագիտատորները հնարավորություն ունեն խոսքի ուժով ներազդել գործընկերների վրա, մղել նրանց ստեղծագործական որոնման, տանել իրենց ետևից։ Նրանք իրենց սկզբնական կուսկազմակերպություններին տեղյակ են պահում այն մարդկանց կարծիքների ու առաջարկությունների մասին, որոնց հետ շփվում ու զրուցում են աշխատանքի պրոցեսում։ Ագիտատորները չեն խուսափում կուսակցական անկեղծ խոսակցությունից, վերհանում են արտադրության ստորին օղակներում չլուծված հարցերը, տեղ գտած թերությունները, նշում դրանց պատճառներն ու վերացման ուղիները։ Նրանք, բացի ագիտացիոն-բացատրական աշխատանքից, նաև ծավալում են կազմակերպչական ակտիվ գործունեություն. ապահովում են իրենց ունկնդիրների մասնակցությունը շաբաթօրյակներին, միտինգներին, բանվորական ժողովներին, դասախոսություններին և այլ միջոցառումների, զբաղվում իրենց տեղամասի ցուցադրական ագիտացիայի կազմակերպմամբ, մասնակցում կայծակ-թերթիկների պատրաստմանը։

Քաղաքական-մասսայական աշխատանքի անբաժանելի մասն են կազմում նաև միասնական քաղօրերը, որոնք միավորումում անցկացվում են 1980 թվականից։ Այստեղ, կուսկոմիտեին առընթեր, գործում է 30 անդամից բաղկացած զեկուցողների խումբ։ Վերջիններս միասնական քաղօրերին հանդիպումներ են ունենում արտադրական ստորաբաժանումների բանվոր-ծառայողների հետ։ Քաղօրվա թեման հայտնի դառնալուց հետո կուսկոմիտեն նրանց համար անցկացնում է հրահանգչական խորհրդակցություններ, տալիս համապատասխան հանձնարարականներ։ Կոմիտեն գործն այնպես է կազմակերպում, որ



տեղերում մարդիկ իմանան, թե ում հետ է կայանալու հանդիպումը և ինչ թեմայի շուրջ է լինելու զրույցը։ Դա դրականորեն է ազդում միջոցառման արդյունավետության և ունկնդիրների ակտիվության վրա, հնարավորություն է ընձեռում նրանց՝ նախապատրաստելու լուծման սպասող հարցեր։

Քաղօրերի ընթացքում հանդես գալով կոլեկտիվի առջև՝ միավորման ղեկավարները, հանգամանորեն խոսելով բուն թեմայի շուրջը, միաժամանակ անդրադառնում են կոլեկտիվի գործերի ընթացիկ իրավիճակին, հրատապ ու հեռանկարային խնդիրներին։ Քաղօրերը հնարավորություն են տվել էլեկտրամեքենաշինարարներին՝ ուղիղ երկխոսության մեջ մտնելու նաև հանրապետության կուսակցական, սովետական ղեկավար մարմինների պատասխանատու աշխատողների հետ, դրանով իսկ պարզել իրենց հուզող ու հետաքրքրող շատ հարցեր ու պրոբլեմներ։ Վերջին մեկ տարվա ընթացքում կոլեկտիվի հետ հանդիպում են ունեցել հանրապետության կուսակցական, սովետական և իրավապահպան մարմինների ղեկավար աշխատողներ։

Քաղօրերի ընթացքում բարձրացված բազմաբնույթ հարցերի մի մասը պատասխան է ստացել, լուծվել է հենց տեղում, իսկ մյուս մասը կուսկոմիտեի գաղափարախոսական հանձնաժողովը սիստեմավորել և ուղարկել է համապատասխան մինիստրություններ, գերատեսչություններ՝ ընթացք տալու։ Այդ հարցերն օգնել են վերադաս մարմիններին, ինչպես նաև միավորման ղեկավարությանը՝ խորամուխ լինելու արտադրության առաջընթացի, տեխնիկական վերազինման, աշխատանքային պայմանների բարելավման մեջ, ծանոթանալու տրանսպորտային, առևտրի, կենցաղային սպասարկումների վիճակին, վերացնելու նեղ տեղերը։

Ձեռնարկված գործուն միջոցների շնորհիվ արտադրամասերում տեղադրվել են նոր հաստոցներ, մեքենայացվել են աշխատատար շատ պրոցեսներ, զգալիորեն կարգավորվել է գործարան եկող հասարակական փոխադրամիջոցների աշխատանքը, բացվել են նոր երթուղիներ։ Ձեռնարկության տարածքում հիմնվել են առևտրի, կուլտուր-կենցաղային սպասարկման նոր օբյեկտներ, արագացվել է բանվոր-ծառայողների համար կառուցվող բնակելի շենքերի շինարարությունը։

Կուսկոմիտեն ամեն ինչ անում է, որպեսզի քաղօրերի ընթացքում չշրջանցվեն սուր թեմաները, բարձրացված ոչ մի հարց դուրս չմնա ուշադրությունից և ստանա կոնկրետ լուծում։

Գաղափարախոսական աշխատանքի արդյունավետությունը մեծ չափով պայմանավորված է կադրերի ակտիվ գործունեությամբ։ Միավորման կուսկոմիտեն մշտապես հոգում է ագիտատորների, քաղինֆորմատորների գաղափարատեսական մակարդակի բարձրացման մասին։ Անցած տարի կոմիտեն անցկացրել է կադրերի հասարակական-քաղաքական ատեստավորում, որի շնորհիվ զգալիորեն բարելավվել են նրանց որակական կազմը, նրանց ցույց տրվող տեսական-մեթոդական օգնությունը։

Նկատի ունենալով քաղաքական-մասսայական աշխատանքի հակապրոպագանդիստական ուղղվածությունն ուժեղացնելու անհրաժեշտությունը՝ կուսկոմիտեն սեմինար պարապմունքներ է կազմակերպում նաև այդ հարցերի շուրջ։

Միավորման ղեկավարները պարբերաբար ինֆորմացիա են տալիս կոլեկտիվի սոցիալ-տնտեսական զարգացման արդյունքների մասին, հանգամանորեն ներկայացնում աշխատանքային իրավիճակը տեղերում, նշում չլուծված հարցերը։

Կուսկոմիտեն, քաղաքական-մասսայական աշխատանք տանող կադրերին տեսական, մեթոդական օգնություն ցույց տալու հետ մեկտեղ, մշտապես վերահսկում է նրանց գործունեությունը։ Վերջերս կուսկոմիտեի բյուրոյի նիստում լսվել է ագիտատոր Ա. Գասպարյանի, քաղինֆորմատոր Լ. Սիմոնյանի հաշվետվությունը։ Նման քննարկումների շնորհիվ բարձրանում է գաղափարախոսական կադրերի պատասխանատվությունը, հնարավորություն է լինում ընդհանրացնել դրական փորձը, բացահայտել թերությունները։

Քաղաքական-մասսայական աշխատանքի կոնկրետ արդյունքը նկատելի է պրակտիկայում։ Միավորման ձեռնարկություններում տիրում է կոլեկտիվիզմի

*և ընկերականության, քաղաքական աչալրջության, սոցիալական լավատեսության մթնոլորտ։ Այստեղ դրսևորվում է աշխատանքի ու վարքի բարձր կուլտուրա։ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր ձեռնարկության կոլեկտիվի 5.735 անդամներ այսօր կրում են կոմունիստական աշխատանքի հարվածայինի պատվավոր կոչումը, իսկ 5.800-ը պայքարում են դրան արժանանալու համար։ Անցած հնգամյակում էլեկտրամեքենաշինարարները պատվով կատարեցին ստանձնած պարտավորությունը՝ թողարկվող արտադրանքի ողջ աճը ապահովեցին աշխատանքի արտադրողականության հաշվին, առանց աշխատողների թվաքանակի ավելացման։ Այդ ընթացքում արտապլանային կարգով թողարկվեց ավելի քան հինգ միլիոն ռուբլու արտադրանք։ Հնգամյակի տարիներին երկրի պատվիրատուներին առաքվեցին շուրջ 50 հազար վագոն էլեկտրական մեքենաներ ու ագրեգատներ։*

*Ձեռնարկության մարդիկ հեռու են այն մտքից, որ իրենց մոտ ամեն ինչ բարեհաջող է։ Նրանք քննադատաբար են գնահատում արածն ու անելիքները և գտնում են, որ միանգամայն տեղին էր Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարում Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանի քննադատական դիտողությունն այն մասին, որ «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումում ևս, նախորդ տարիների համեմատությամբ, նվազել է որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի տեսակարար կշիռը։ Կուսկոմիտեն սկզբնական կուսկազմակերպությունների, կոմունիստների և կոլեկտիվների ուշադրությունը սևեռում է այդ թերացման անհապաղ վերացման, ձեռնարկության մակնիշի պատվի համար գործնական պայքար կազմակերպելու վրա։*

*«Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ժողովրդատնտեսական պլանների կատարման գաղափարախոսական ապահովման գործում դրական է գնահատվել նաև «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման կուսկազմակերպության փորձը։ Հիրավի, այստեղ արվում է ամեն ինչ, որպեսզի գաղափարադաստիարակչական բնույթի բոլոր միջոցառումները նպատակաուղղվեն ոչ միայն կոլեկտիվի անդամների քաղաքական մտահորիզոնի ընդլայնմանը, այլև միաժամանակ վերածվեն աշխատանքի արդյունավետության բարձրացման խթանիչ ուժի, նպաստեն մարդկային գործոնի ակտիվացմանը, մոբիլիզացնող դեր խաղան պլանների կատարման ու գերակատարման համար։*

*Կուսկոմիտեն ձգտում է հասնել այն բանին, որ քաղաքական-մասսայական աշխատանքում լինեն, լենինյան խոսքերով ասած՝ «ավելի քիչ քաղաքական ճոճուն ճառեր», ուշադրությունը կենտրոնացվի նման միջոցառումների ոչ թե քանակական, այլ որակական կողմին։ Այդ առնչությամբ ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան (1985 թ.) պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովն ասաց. «Այսօր մեկ անգամ ևս կարելի կլիներ հիշեցնել, որ պրոպագանդայում, ամբողջությամբ վերցված գաղափարախոսական աշխատանքում, թող սա ոմանց տարօրինակ չթվա, նույնպես պետք է լինի ավելի քիչ խոսք և ավելի շատ գործ»։*

*ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախագծում ասվում է. «Քաղմասսայական ու պրոպագանդիստական աշխատանքում անհրաժեշտ է վճռականորեն արմատախիլ անել դատարկախոսության, ձևականության, պարզունակության դրսևորումները։ Դրա բոլոր ձևերն ու միջոցները պետք է օգնեն երկրի առջև ծառացած խնդիրների կատարման համար մասսաների ստեղծագործական եռանդի մոբիլիզացմանը...»։ Իր գործունեությունը վերակառուցելով ժամանակի պահանջներին համապատասխան, ելնելով ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագծում առաջադրված մասշտաբային խնդիրներից՝ միավորման կուսկոմիտեն ամեն կերպ ձգտում է քաղաքական-մասսայական աշխատանքը արդյունավետորեն ծառայեցնել տնտեսական խնդիրների լուծմանը, բարձրացնել կոլեկտիվի անդամների աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը, մոբիլիզացնել նրանց հոգևոր եռանդը կոմունիստների հերթական մեծ համաժողովը արժանավայել դիմավորելու համար։*



# ԴԵՄՈԳՐԱՖԻԱԿԱՆ ԾԵՐԱՑՈՒՄՆ ՈՒ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԱՌՈՂՋՈՒԹՅԱՆ ՈԼՈՐՏՈՒՄ

**Մ. ԲԵԴՆԻ**
Բժշկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Սոցիալիստական հասարակությունն իր հումանիստական էությամբ մեծապես նպաստում է մարդու երկարակեցության ապահովմանը։ Այդ է վկայում այն իրողությունը, որ մեր երկրում Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո ստեղծվեցին բարենպաստ պայմաններ մարդու կյանքի ու գործունեության համար։ Հիրավի, սովետների երկրում առողջապահությունը դարձավ համաժողովրդական, համապետական գործ։ Ժողովրդական առողջապահության լենինյան ավանդույթները կոմունիստական կուսակցության քաղաքականության շնորհիվ բարձրացել են մի նոր աստիճանի, որոնք, անշուշտ, իրենց արտահայտությունը կգտնեն ՍՄԿԿ XXVII համագումարի կողմից հաստատվելիք ծրագրի նոր խմբագրության մեջ, որի նախագծում կարդում ենք. «Առաջնահերթ կարևորության գործ է սովետական մարդկանց առողջության ամրապնդումը, նրանց ակտիվ կյանքի տևողության ավելացումը»։ Այդ նպատակով է, ահա, որ, ինչպես նախատեսված է ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագծում, առաջադրվում է «վարել ժողովրդագրական այնպիսի քաղաքականություն, որն ավելի լրիվ հաշվի առնի երկրի տարբեր ռեգիոնների առանձնահատկությունները։ Ըստ ամենայնի նպաստել բնակչության կյանքի և աշխատանքային ակտիվության մեծացմանը»։

Դեմոգրաֆիական ծերացման ու փոփոխությունների հարցը բնակչության առողջապահության ոլորտում ավելի հրատապ է դառնում զարգացած սոցիալիզմի արդի փուլում, երբ, իրոք, երկարակեցությունը դարձել է օրինաչափություն, կյանքի իրողություն։ Հետևաբար այս պրոբլեմը հուզում է ո՛չ միայն մասնագետներին, այլև հասարակության լայն շրջաններին։

Առողջությունն ու երկարակեցությունը, լինելով կենսաբանական ֆենոմեն, մեծապես իրենց վրա կրում են սոցիալական հարաբերությունների կնիքը։ Սոցիալիզմի օրոք հոգատարությունը տարեց մարդկանց, նրանց աշխատունակության և ակտիվ ստեղծարար գործունեության կարողության պահպանման նկատմամբ սոցիալական գլխավոր պահանջներից է։

Բնակչության ծերացումը (ամբողջ բնակչության մեջ տարեց և ծեր մարդկանց թվի մեծացումը) դեմոգրաֆիական և փոփոխուն հասկացություն է, այն տարբեր է օրգանիզմի ծերացում հասկացությունից։ Վերջինս մի պրոցես է, որն ուսումնասիրում են կենսաբաններն ու գերոնտոլոգները։

Այլազան են տարբեր տարիքի ու սեռի մարդկանց մահացության և հիվանդացության ցուցանիշները։ Դրանք առավել բարձր են մանկական հասակի երեխաների մոտ, ապա իջնում են 10—14 տարեկանների մոտ, հետո կրկին սկսում են բարձրանալ։ Այդ տեղի է ունենում սկզբում դանդաղ, ապա մոտ 30 տարեկանում արագանում, իսկ 60—65-ից հետո մի քանի անգամ գերազանցում է երիտասարդ և միջին տարիքի մարդկանց հիվանդացությունն ու մահացությունը։ Բոլոր տարիքախմբերում

պայմանները ո՛չ միայն մեկ, այլ նույնիսկ մի քանի սերունդների համար համարյա նույնն էին մնում: 70-ամյա միջին կենսատևողության պայմաններում և բնակչության ակնհայտ ծերացման պրոցեսում մեկ սերնդի կյանքի ընթացքում տեղի են ունենում լուրջ, հաճախ արմատական փոփոխություններ հասարակության կյանքի բոլոր ոլորտներում: Անցյալը խիստ տարբերվում է ներկայից և ավելի ու ավելի է հեռանում դրանից: Նկատվում է իր ժամանակից ետ մնալու միտում: Դրան նպաստում է և այն, որ տարեց մարդիկ ավելի լավ հիշում են անցյալի, քան ներկայի իրադարձությունները: Բնակչության ծերացումից բխող այս խնդիրների անտեսումը և դրանց լուծմամբ չզբաղվելը անհանդուրժելի սխալ կլինեին:

Հին ժամանակներում, երբ պետք էր լինում, ծերերը կենսափորձի բարձունքից դիմում էին իրենց հետ սերտորեն կապված և հնազանդորեն իրենց հետքերով ընթացող զավակներին: Տարիքն ինքը ծերունու համար հատուկ դիրք էր ապահովում. նրա վարկն ու հեղինակությունն անառարկելի էին, քանզի համարվում էին բնական պրոցեսի արգասիք: Ճիշտ այնպես, ինչպես մարդու մարմնի ամենաբարդ, զարգացած և, միաժամանակ, կարևորագույն օրգանը հանդիսանում է ուղեղը, այդպես էլ հասարակության մեջ ծեր մարդը գլխավոր դեմքն էր, հասարակական շենքի բնական պսակը: Դեռևս տեխնիկական դարաշրջանից առաջ գոյություն ունեին բարոյական չափանիշներ՝ ակնածանք, հարգանք, տարիքային գործոն, հեղինակություն, արժանապատվություն և հանդուրժողականություն՝ տոգորված հոգեկան վսեմ բովանդակությամբ: Այսօր դրանք մեզ համար դարձել են սովորական հասկացություններ:

Կյանքի տևողության երկարացման, ծերանալու և ծերության հարցերը նախկինում երբեք չէին արժանանում գիտական ու լայն հասարակայնության ուշադրությանը: Այժմ հրապարակվում են այդ հարցերին նվիրված գրքեր ու հոդվածներ: Տարբեր կոնֆերանսներում ու համաժողովներում արծարծվում, քննարկվում են դրանք: Այդ հարցերով այժմ զբաղվում է մի ամբողջ բնագավառ՝ գերոնտոլոգիան: Նման հետաքրքրությունը բնական է, քանի որ գնալով մեծանում է ծերության հասնողների թիվը բնակչության ընդհանուր թվաքանակում:

Ցանկանում ենք մենք այդ թե ոչ, սակայն օբյեկտիվ իրականությունը վկայում է այն մասին, որ տարիքի հետ նվազում են «դիմացկունության պաշարը», կենսունակությունը, վատանում է առողջական վիճակը, երևան են գալիս երկարատև խրոնիկական հիվանդություններ: Անշուշտ, տարիքի հետ կապված հիվանդությունները հույժ այլազան են տարբեր անհատների մոտ, բայց չպետք է մոռանալ, որ ծերությունն ինքը հիվանդություն է, որ պետք է բուժել, ինչպես ամեն մի այլ հիվանդություն: Ավելի ճիշտ ծերությունն ուղեկցվում է հիվանդություններով, և դրանք հարկավոր է կանխել, հեռացնել, նվազեցնել դրանց քայքայիչ ազդեցությունը օրգանիզմի վրա, խնդիրներ, որոնցով զբաղվում են գերոնտոլոգիան և գերատրիան:

Դեմոգրաֆիական, փիլիսոփայական և բժշկական ուսումնասիրությունների միջոցով պետք է պարզել, թե որո՞նք են բնակչության ծերացման աճող պրոցեսի հետևանքները: Ամենից առաջ հառնում է մի հարց. ինչպե՞ս և ո՞ր ուղղությամբ կարող է փոխվել ազգաբնակչության ընդհանուր առողջական վիճակը դեմոգրաֆիական ծերացման ժամանակ:

Վիճակագրական տվյալները վկայում են, որ տարիքի հետ արագ մեծանում է խրոնիկական հիվանդությունների հաճախականությունը (բժշկական կոմպլեքսային ուսումնասիրությունների տվյալներով, 60—69 տարեկանների մոտ հիվանդությունների հաճախականությունը 4—5 անգամ ավելի մեծ է, քան 20—29 տարեկանների): Սակայն կարևորը միայն հաճախականությունը չէ, այլ ախտաբանական պրոցեսների ընթացքի ծանրության աստիճանը (համակշռված, ենթահամակշռված, չհամակշռված ձևեր): Հատուկ ուսումնասիրությունների միջոցով պարզվել է, որ տարիքի հետ առողջ մարդկանց թիվն զգալիորեն նվազում է (48,5 տոկոսը՝ 15—19 տարեկանում, մինչև 2 տոկոսը՝ 60 և ավելի տարեկանում): Այդ պայմանավորված է համակշռման, ենթահամակշռման, չհամակշռվածության շրջանում խրոնիկական հիվանդություններ ունեցող հիվանդների թվի ավելացմամբ:

60 և ավելի տարիքում օրգանիզմի ֆունկցիոնալ ունակությունների ակնբախ նվազում է դրսևորվել 28 տոկոսի մոտ:

Եթե նկատի ունենանք ո՛չ միայն ախտաբանական, այլև ֆիզիոլոգիական այնպիսի տեստեր, որոնք տարիքի հետ թուլանում են, ինչպես՝ մկանային համակարգը, տեսողությունն ու լսողությունը, ռեակցիայի արագությունը, հենաշարժական ապարատի ֆունկցիոնալ վիճակը, սիրտ-անոթային և նյարդային համակարգերը, հոգեկան վիճակը և այլն, ապա հասկանալի կդառնա, թե ի՛նչ ուղղությամբ են փոխվում բնակչության առողջական վիճակն ու աշխատունակությունը երիտասարդների և տարեցների քանակակազմի համամասնությունների փոփոխման դեպքում: Ուստի և բոլոր այլ պայմանների առկայության դեպքում ազգաբնակչության ընդհանուր կենսունակությունն ու աշխատունակությունը կախված կլինեն բնակչության ծերացման պրոցեսի դրսևորման աստիճանից:

Զգալի են բնակչության առողջական վիճակի արդի տեղաշարժերը, բժշկական սպասարկման նկատմամբ աճող պահանջմունքները, որոնք բացատրվում են դեմոգրաֆիական ծերացմամբ: Այս պրոցեսը շոշափում է սոցիալական կյանքի, հասարակական հոգեբանության, էթիկայի, բարոյականության շատ կողմեր, ուստի և պահանջվում է հարցի փիլիսոփայական իմաստավորում:

Ծերացում—ծերություն—մահ. համընդհանուր բնական պրոցեսներ են դրանք. այն ամենը, ինչ գոյություն ունի, կա, ենթակա է ժամանակի քայքայիչ ազդեցությանը: Միաժամանակ անմահության գաղափարն ինքը, երազանքները «անմահական ջրի» մասին արդյունք են այն բանի, որ ոմանք երկար են ապրում, իսկ ոմանք մեռնում են՝ չհասցնելով սպառել իրենց կենսական ուժերը: Ելնելով դրանից՝ կարելի է խոսել վաղաժամ ծերության և վաղաժամ մահվան մասին:

Մարդկային պատմության ողջ ընթացքում եղել են մարդիկ, որ ապրել են մինչև 70, 80, 90 և ավելի տարիներ: Սակայն դրանք եզակի բացառություններ էին: Հնում ծերունի էր համարվում, օրինակ, 70-ին հասած մարդը. իսկ այժմ այդ տարիքին է հասնում մարդկանց ավելի քան 60 տոկոսը: Այնպես որ ծերության հասնելը բացառիկ երևույթից վեր է ածվել բավականին սովորականի, կարելի է ասել, զանգվածայինի: Այս հանգամանքն իսկ դարձել է «ծերության» և մարդու կյանքի վերաբերյալ մեր պատկերացումների փոփոխության և՛ պատճառը, և՛ հետևանքը: Բայց և կարևորն այստեղ ոչ միայն պատկերացումներն են, այլև օբյեկտիվ իրականությունը. օրգանիզմի ծերացման, զառամյալության տեմպը դանդաղել է. մի փաստ է այս, որն արդյունք է կյանքի սոցիալական պայմանների և բժշկական գիտության ու առողջապահության նվաճումների: Միաժամանակ սխալ կլիներ պնդել, թե էական փոփոխություններ են կատարվել մարդու բնության, նրա կենսագործունեության գենետիկական ծրագրում: Այդ հերքում են և՛ գենետիկական, և՛ գերոնտոլոգիական, և՛ դեմոգրաֆիական հետազոտությունները:

Դեռևս դարասկզբին Ի. Ի. Մեչնիկովը հստակ ու որոշակի ասել է, որ փոխադարձ կապ գոյություն ունի կյանքի տևողության սահմանների կենսաբանական և սոցիալական իրականացման միջև: «...Միանգամայն ճիշտ է,— գրել է նա,— որ տվյալ տեսակը ունի իր աճման ու կյանքի սահմանը, որն անցնել չի կարող, և որ այդ սահմանը պայմանավորված է ներքին պատճառներով: Այդ զուտ ֆիզիոլոգիական պայմանները, այնուամենայնիվ, չեն խանգարում այն բանին, որ արտաքին պայմանների ազդեցությամբ բավականին տատանվեն այդ սահմանները» (И. И. Мечников. Этюды оптимизма): Մեչնիկովը գտնում էր, որ սերտ կապ գոյություն ունի բազմածնության և երկարակեցության միջև: Կենդանիների կյանքի հարատևության համար անհրաժեշտ է, որ նրանք բազմանան, որ նրանց սերունդները կարողանան հասունանալ և վերարտադրել իրենց նմաններին: Տարբեր տեսակների պտղաբերության և կյանքի տևողության միջև գոյություն ունի համամասնական անդրադարձ փոխկախվածություն: Օրինակ, գիշատիչ շատ թռչուններ (արծիվը, անգղը և այլն) տարեկան միայն մի ձու են դնում և միայն մեկ-երկու ձագ ունենում: Նման պայմաններում երկարակեցությունը նրանց համար դառնում է տեսակի պահպանության միջոց. այդ հատկությունը մշակվել է տեսական էվոլյուցիոն զարգացման ընթացքում: Հակառակ դեպքում տեսակը չէր ունենա ապրելունակության ոչ մի հավանականություն:

Կարելի է բերել շատ օրինակներ այն բանի, որ կյանքի կարճ տևողության պայմաններում նկատվում է բարձր ծնելունակություն, որը լիովին փոխհատուցում է տեսակի կարճ կյանքը: Բայց կենսաբանական այդ համընդհանուր օրենքն ունի

երբ Լենինականում հաջողությամբ գործում են քար կտրող մեքենաների «Ստրոմմաշինա» գործարանը և այդ ուղղությամբ հետազոտական ու կոնստրուկտորական աշխատանքներ կատարող շինարարական մեքենաների հատուկ կոնստրուկտորական տեխնոլոգիական բյուրոն: Այդ տեսանկյունից նպատակահարմար է նաև Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի Լենինականի մասնաճյուղում ուսանողներին նեղ մասնագիտացում տալ շինանյութերի տեխնոլոգիայի գծով:

Դեռևս 1937 թվականից Լենինականում գործում է սելեկցիոն կայան, որը մշակում է հացահատիկի նոր սորտեր ստանալու եղանակներ: Շիրակի բարձրավանդակում պտուղների և հատապտուղների աճեցման հարցերով է զբաղված խաղողագործության, գինեգործության և պտղաբուծության գիտահետազոտական ինստիտուտի բարձր լեռնային կայանը: Եվ այդ առումով միանգամայն ողջունելի ու խրախուսելի է ՀԿԿ Ախուրյանի շրջանային կոմիտեի նախաձեռնությունը Հացիկի սովխոզ-տեխնիկումի ապագա համալիրի բազայի վրա գյուղատնտեսական գիտաարտադրական միավորում ստեղծելու վերաբերյալ: Ինչ խոսք, միավորումը կարող է էապես նպաստել Շիրակի տնտեսական ռեգիոնում ագրոարդյունաբերական համալիրի գիտաարտադրական խնդիրների իրականացմանը: Ստեղծվում են որոշակի նախադրյալներ Լենինականում հանրապետության գիտությունների ակադեմիայի կենտրոն ստեղծելու համար:

Այսօր Ստեփանավանում որոշակի նախադրյալներ են ստեղծված անասնաբուծության և անասնաբուժության բնագավառում գիտական արդյունավետ գործունեություն ծավալելու համար: Գիտաարտադրական բազայի ստեղծումը, համապատասխան կադրերի, բնակլիմայական նպաստավոր պայմանների առկայությունը թույլ կտան բեղմնավոր աշխատանք կատարելու այդ ասպարեզում: Մենք համամիտ ենք այն գիտնականների կարծիքին, որոնք գտնում են, որ Ստեփանավանում անհրաժեշտ է բացել անասնաբուծության և անասնաբուժության ինստիտուտի մասնաճյուղ: Սա կարող է դառնալ ագրոարդյունաբերական համալիրի հաջող աշխատանքը պայմանավորող ազդակ:

Զանգեզուրում, մասնավորապես Ղափանում, չնայած գործում է ՀՍՍՀ ԳԱ երկրաբանական գիտությունների ինստիտուտի Զանգեզուրի բազան, բայց, այնուամենայնիվ, նրա գործունեությունը կրում է սեզոնային բնույթ, և անհրաժեշտ գիտական միկրոկլիմա ստեղծելու համար բազայի հնարավորությունները սահմանափակ են: Պետք է տեղի շնորհալի մասնագետների ուժերի օգտագործման միջոցով ընդլայնել նրա գործունեությունը: Հետաքրքիր աշխատանք է ծավալել նույն ինստիտուտի Ղափանի մետալուրգիական լաբորատորիան, որի հետազոտություններն արժանի են ամենայն խրախուսանքի: Արդյունավետ գիտաարտադրական աշխատանք է կատարում ՀՍՍՀ ԳԱ հաշվողական կենտրոնի Ղափանի հարմարվող սարքերի լաբորատորիան, որի գիտական մշակումների շնորհիվ որոշակի չափով ավտոմատացվել են Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի հարստացուցիչ ֆաբրիկայի առանձին արտադրական պրոցեսները:

Ներկա հոդվածում որոշ նկատառումներ հայտնվեցին հանրապետության միջին ու փոքր քաղաքների ներդաշնակ զարգացման վերաբերյալ: Դրանց իրականացումը, մեր համոզմամբ, էապես կնպաստի տեղերում գիտական մտքի ծավալմանը, ծայրամասերի գիտատեխնիկական առաջընթացին և, վերջին հաշվով, արտադրողական ուժերի ավելի ճիշտ տեղաբաշխմանը:

**Ս. ԲԱԴԱԼՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ գեոֆիզիկայի և ինժեներային
սեյսմոլոգիայի ինստիտուտի դիրեկտոր

Հանձնված է շարվածքի՝ 27.01.86 թ.: Ստորագրված է տպագրության՝ 13.02.86 թ.: ՎՖ 04532: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 18.232: Պատվեր՝ 215:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2: